

ԴԵԿՏԵՄԲԵՐ
№ 12
1954 Թ.

# ՊԻՈՆԵՐ

*Ի. Վ. Ստալինի ծննդյան 75-ամյակի առթիվ*

# ՏՈՒՐՈՒԽԱՆՅԱՆ ԵՐԿՐՈՒՄ

*(Հատված)*

Վ. ԴԱՎԹՅԱՆ

Վառարանում հուրը բորբոքվում է հանգիստ
Ու բորբոքում իր հետ զրույցը ջերմ:
— Ի՞նչ լուրեր կան արդյոք, Սուրե՛ն, պատերազմից,
Եվ ինչպե՞ս է ապրում Իլյիչը մեր...
— Իլյիչը շատ լավ է: Հուժկու, տիտանաբար
Կեղծիքն է ձաղկում մենշևիկյան,
Որոնք Ռոմանովի հաղթանակի համար Ավելի են հոգում,
Քան թե չինովնիկը արքունական:
— Իսկ ի՞նչ լուրեր ունես, Սուրե՛ն, տանից.
Ինչպե՞ս են դուստրերդ՝ Անժելիկան, Մանյան,
Ո՞նց է արդյոք քեֆը փոքրիկ Ստեփանի,
Եվ ինչպե՞ս է ապրում Օլգա Վյաչեսլավնան:
— Օլգան լավ է, լավ են նաև մանկիկներս.
Իրենց թոթով գրչով հաճախ գրում են ինձ.
Բայց, ա՛յ, վերջերս խիստ մտահոգվել եմ ես.
«3» է ստացել Մանյան ռուսերենից:
Իսկ հայրս վերջերս Փարիզում է եղել,
Եվ Իլյիչը այնտեղ այցելել է նրան,
Օգնել ամեն ինչով ու տվել է դրամ,
Հետո նամակ գրել իմ մի ծանոթուհուն
Եվ հայտնելով լուրն իմ բանտարկության՝
Թախանձագին խնդրել, որ իմ մասին հոգան:
Իլյի՜չ... Որքան, որքա՜ն մարդկայնություն կա խոր,
Որքա՜ն պայծառություն վսեմ այդ մարդու մեջ...
Եվ չկա այլ վեհ բան, քան թե լինել զինվոր
Այն բանակում, որի զորավարն է նա մեծ:
— Այո, Սուրե՛ն, երբ ես դեռ տարիներ առաջ
Ծանոթացա նրա մեծ կյանքին ու գործին,
Ինձ թվաց, որ ոչ թե մարդ է նա հասարակ,
Կամ սոսկ մի ղեկավար, այլ լեռնային արծիվ...
Ու երբ Տամմերֆորսում հանդիպեցի նրան,
Զգացի, որ մեծ է նա մեծերից բոլոր,
Որ գերում է, տանում է անվարան
Նա ամենքին մտքով իր զորավոր:
Չպարծենալ երբեք հաղթանակով տարած,
Ու պարտության դեպքում չնվնվալ.
Սկզբունքն այս վսեմ միշտ օգնում է նրան
Հաղթահարել ամեն անակնկալ:
Չնվնվալ երբեք... Սուրե՛ն, ամռանը ես
Տեսա Ենիսեյի փոթորիկը ահեղ,
Ելնում էին, հուզվում ջրերը փրփրադեզ,
Սպառնում ձկնորսական նավակները թաղել:
Եվ ձկնորսներ կային, որ փոթորկի հանդեպ
Հուսալքվում էին, ապրում ահ ու սարսափ.
— Տղե՛րք, վատ է բանը, շո՛ւտ, հատակին պառկեք,
Գուցե ջուրը մի կերպ դուրս կբերի մեզ ափ:
Բայց և կային մարդիկ, խիզախներն են սրանք,
Որ ծառս էին լինում փոթորիկի հանդեպ.
— Ամուր բռնեք, ղեկը տղե՛րք, չնվնվաք,
Ճեղքենք ալիքները, մենք կհաղթենք, կանցնենք:
Եվ հաղթեցին... Այդպես ուսուցիչը մեր մեծ
Ռևոլյուցիայի գոռ ալիքների միջով
Մեր պարտիայի նավն է հզոր ու հողմածեծ
Վարում դեպ գալիքի ափերը լուսաշող:

Եվ Ստալինն հետո տեղից ելնում է վեր,
Վառում ծխամորճը իր անբաժան.
Փոքրիկ իր սենյակում քայլում առաջ ու ետ
Ու խոսում է հանդարտ կռվի մասին դաժան,
Պատերազմի հանդեպ բոլշևիկյան դիրքի,
Մենշևիկյան սնանկ պարոնների մասին
Եվ փոթորկի մասին, որ գա պիտի, փրկի
Հողն այս՝ շնչով իր թարմ ու անբասիր:

Եվ խոսքերը նրա այնպես պարզ են, պայծառ,
Որ թվում է, թե նա Հյուսիսից այս կապույտ,
Ողջ աշխարհից հատված երկրից այս սառուցյալ,
Ողջ աշխարհն է տեսնում, ինչպես ափում...
Եվ խոսքերը նրա այնպես հստակ են, խոր
Ու նման են այնպես Լենինի խոսքերին,
Որ թվում է, թե այդ երկու կրծքի ներքո
Նույն սիրտն է բաբախում հանճարեղ ու խորին...




Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ

№ 12

ԴԵԿՏԵՄԲԵՐ

1954 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 26-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆԸ երեխաների հետ, Տուշինոյի օդանավակայանում 1936 թ.

# ԹՌՈՒՑԻԿՆԵՐԸ

## Ա. ԳՈԼՈՒԲԵՎԱ

*Քսան տարի առաջ ժողովրդի անարգ թշնամիները սպանեցին Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ականավոր գործիչ Սերգեյ Միրոնովիչ Կիրովին։ Սովետական մարդիկ ոչ մի օր մոռացության չեն տվել նրա պայծառ հիշատակը, նրա կատարած մեծ գործերը։*

*Բոցաշունչ ռևոլյուցիոներն իր ամբողջ կյանքը նվիրեց ժողովրդին, մեր Հայրենիքի ծաղկման ու հզորացման գործին։*

*Ս. Մ. Կիրովը սովետական երեխաների մտերիմ բարեկամն էր և խորհրդատուն։ Երեխաները աշխատում են ամեն ինչում նմանվել նրան. լինել նրա պես անխոնջ ու աշխատասեր, սիրել ուսումը, ձգտել դեպի գիտության բարձունքները, լինել առաջավոր, կարգապահ, լինել խիզախ, ազնիվ, լինել անսահմանորեն նվիրված Կոմունիստական պարտիայի մեծ գործին, լինել իսկական լենինյան, ինչպես Սերգեյ Միրոնովիչ Կիրովն էր իր ամբողջ կյանքի ընթացքում։*

*Ս. Մ. Կիրովի մասին շատ գրքեր են գրվել, շատ պոեմներ ու երգեր են հորինվել։ Դրանցից է նաև Ա. Գոլուբևայի «Պատմվածքներ Սերյոժա Կոստրիկովի մասին» գիրքը, որտեղ հեղինակը նկարագրում է պատանի Կիրովի կյանքը։ Տպագրում ենք մի հատված այդ գրքից։*

Կազանի արդյունաբերական ուսումնարանի աշակերտ Սերյոժա Կոստրիկովը ամռան արձակուրդներին եկել է տատի մոտ՝ Ուրժում քաղաքը։ Նրա ընկերը՝ Սանյան Սերյոժային ծանոթացնում է աքսորյալ ռևոլյուցիոներ Պավել Իվանովիչի հետ։ Պավել Իվանովիչը տղաներին մի օր հրավիրում է իր մոտ հյուր...

*Սերյոժան վաղուց էր ուզում ծանոթանալ աքսորականների հետ։ Եվ ահա, վերջապես ծանոթացավ իսկական քաղաքական աքսորականի հետ։*

*— Սա՛նյա, վաղը գնանք ուսանողի մոտ,— ասաց Սերյոժան։*

*Եվ մյուս օրը երեկոյան նրանք գնացին սարատակի դեղին տնակը։*

*— Ա՜, եկան հյուրերը՝ կրծելու ոսկորները,— ժպտալով դիմավորեց նրանց նախասենյակում անծանոթ աքսորականը, տարեց և բարձրահասակ մի մարդ։— Հապա՛, տղերք, անցեք դեպի սեղանը։*

*Սերյոժան ու Սանյան մտան սենյակ։ Աքսորականները թեյ էին խմում։ Պավել Իվանովիչը տղաներին ծանոթացրեց մյուսների հետ։ Տնակում ինը մարդ էր ապրում։ Սերյոժան ու Սանյան իմացան, որ այստեղ կան երիտասարդներ ու ծերեր, ուսանողներ ու բանվորներ, որ իրենց դիմավորող բարձրահասակ տարեց աքսորականի ազգանունը Զոտկին է, որ նա բանվոր է, Պուտիլովյան գործարանի փականագործ։*

*Առաջին օրվա երեկոյան Սերյոժան ու Սանյան աքսորականների մոտ նստեցին ու խոսեցին ամբողջ մի ժամ։ Երկու օր հետո նրանք նորից գնացին սարատակի տնակը։*

*Հիմա նրանց հրավիրում էր ոչ միայն Պավել Իվանովիչը, այլև փականագործ Զոտկինն ու բոլոր մնացածները։*

*— Տեսնում եմ, որ դուք լավ տղերք եք և, իմ կարծիքով, կարողանում եք լռել,— մի երեք շաբաթ հետո ասաց փականագործ Զոտկինը։*

*«Կարողանում ենք» ուզում էր բացականչել Սերյոժան, բայց ամաչեց։*

*— Այս գործում, բարեկամներս, զգուշություն է հարկավոր։ Մեզ որոշ օգնություն անհրաժեշտ է։*

*— Իսկ ի՞նչ պիտի անել,— հարցրեց Սերյոժան. հուզմունքից նույնիսկ ձեռքերը դողացին։*

*— Թռուցիկնե՛ր...*

*Եվ փականագործ Զոտկինն սկսեց ընկերներին պատմել ու բացատրել, թե թռուցիկներն ինչպես պետք է տպել։ Քիչ աշխատանք չէր պահանջվում։ Հարկավոր էր դոնդողով գլիցերին գնել դեղատնից։ Քաղաքում միայն մի դեղատուն կար. միանգամից գնել չէր կարելի։ Հարկավոր էր դեղատուն գնալ հերթով, որպեսզի ճաղատ ու հաստափոր դեղագործը չզարմանա, թե տղաների ինչին է պետք այդքան գլիցերինը։ Ապա գլիցերինից կոշկաներկի պես մի խառնուրդ պետք էր եփել, իսկ հետո սկսել թռուցիկներ տպել...*

*— Հը՞, ամեն ինչ հասկացա՞ք,— հարցրեց Զոտկինը։*

*— Ամեն ինչ։*

*Սերյոժան ու Սանյան ութ օր գնում էին*

դեղատուն գլիցերին առնելու։ Ապա կոշկանեղկի պես մի բան եփեցին։

Եվ ահա գիշերը, երբ բոլոր անեցիները քնած էին, Սերյոժան ու Սանյան գնացին հին բաղնիքի կողմը։ Բաղնիքում նրանք բամբակե աղյալով ծածկեցին լուսամուտը, վառեցին լապտերը և սկսեցին թռուցիկներ տպել։ Թռուցիկներում ասվում էր, թե ինչու չքավորները վատ են ապրում, իսկ հարուստները՝ լավ, և թե ով է մեղավոր, որ այդպես է։ Թռուցիկների տակ ամենավերջում, մեծ տառերով գրված էր՝ «Կորչի՛ ցարը։ Կեցցե՜ ռևոլյուցիան»։



...սկսեցին թռուցիկներ տպել։

Եթե ոստիկանները Սերյոժային ու Սանյային բռնեին այսպիսի թռուցիկներով, անմիջապես բանտ կնետեին։

Սերյոժան ու Սանյան տպում էին ու ականջ դնում, թե հո մարդ չի գալիս։ Սերյոժան դրա համար երկու անգամ դուրս վազեց փողոց։ Փողոցը լուռ էր ու մթին... Միայն կանաչի մեջ ծղրիդներն էին ճռճռացնում ու փողոցի վերջում մի շուն էր հաչում։

Տղաներն աշխատեցին մինչև առավոտ։ Իսկ երբ ծագեց արևը և հովիվն սկսեց շվին փչել ու կովերին դաշտ քշել, Սերյոժան վազեց աքսորականների մոտ։

— Ամեն ինչ պատրաստ է,— ասաց նա Զոտկինին.— երեք հարյուր թռուցիկ դուրս եկավ։

— Կեցցե՛ք, տղերք,— գովեց փականագործը։— Հիմա ձեզ մնում է վերջին և ամենավտանգավոր գործը. այս գիշեր այդ թռուցիկները հարկավոր է ցրել քաղաքում, շուկայում և Մալմիժյան փոստուղու վրա։ Տեսեք հա՜, չընկնեք ոստիկանների ձեռքը, զգո՜ւյշ եղեք։

— Զգույշ կլինենք,— պատասխանեց Սերյոժան։

Վրա հասավ գիշերը։ Սերյոժան ու Սանյան սկսեցին պատրաստվել։ Նրանք թռուցիկները հապճեպ խոթեցին գրպաններն ու ծոցերը։ Նրանց վերնաշապիկները փքվեցին, գրպաններն ուռեցին։

— Առաջ գնանք շուկա, հետո Մալմիժյան ճանապարհը,— ասաց Սերյոժան։

Նրանք լապտերը հանգցրին, բաղնիքից դուրս եկան, անցան բակն ու ելան փողոց։

Քաղաքը քնած էր...

Նրանք արագ և լուռ քայլում էին խաղաղ, քնաթաթախ քաղաքի փողոցով։ Շուտով հասան շուկա։

— Սկսիր,— շշուկով ասաց Սերյոժան։

Նրանք կուզեկուզ վազեցին դեպի փայտե վաճառասեղանները, որոնց վրա գյուղացիները դասավորում էին իրենց ապրանքը՝ կճուճներով կաթը։ Սերյոժան ու Սանյան արագորեն ցրում էին թռուցիկները վաճառասեղանների վրա։ Ամեն կողմից խրթխրթոց ու փնչոց էին լսվում։ Դա արձակված ձիերն էին խոտ ծամում։ Սայլերի վրա և սայլերի տակ քնած էին տոնավաճառ եկած գյուղացիները։ Երբեմն քնակոլոլ մարդիկ շարժվում էին, վեր կենում։ Այդ ժամանակ Սերյոժան ու Սանյան անմիջապես թաքնվում էին վաճառասեղանների հետևը։ Երբ ամեն ինչ լռում էր, նրանք նորից սկսում էին աշխատանքը։ Շուտով բոլոր վաճառասեղանները ծածկված էին սպիտակ թռուցիկներով։

— Դե՛, պատրաստ է,— շշնջաց Սերյոժան.— հիմա վազենք դեպի Մալմիժյան ճանապարհը։

Եվ նրանք վազեցին։ Ճանապարհն այնքան էլ մոտ չէր. իսկ գործը մինչև առավոտ հարկավոր էր վերջացնել։ Բարձր ցանկապատով ու փորագրված երկաթե դռնակով մի տան մոտ Սերյոժան կանգ առավ, գրպանից մի

քանի թռուցիկ հանեց և ցանկապատի վրայով թափով շպրտեց այգին: Սանյան վախեցավ, բռնեց նրա թևը: Այդ տանն ապրում էր Ուրժումի ամենամեծ մարդը՝ շրջանի ոստիկանապետ Պենեշկևիչը:

— Փախչե՛նք...

Սերյոժան հրեց Սանյայի կողքը և նրանք սլացան ինչքան ուժ ունեին: Երբ փողոցը մնաց հետևում, Սերյոժան շշուկով ասաց.

— Թող իմանա, որ ռևոլյուցիոներները գիշերներն էլ չեն քնում:



...մի քանի թռուցիկ... ցանկապատի վրայով շպրտեց այգին:

Քաղաքային այգուց դուրս գալով, տղաները հանեցին սապոգները և անցան Ուրժումկա գետը: Գետի մյուս ափից անմիջապես սկսվում էր Մալմիժյան ճանապարհը: Նրա երկու կողմում սևին էր տալիս անտառը: Սերյոժան ու Սանյան հազիվ էին հասել այնտեղ, երբ անսպասելիորեն նրանց հետևում կարճ և սուր մի սուլոց լսվեց: Թվաց, թե դա շատ մոտ էր: Սերյոժան ու Սանյան իրենց գլխապատառ գցեցին անտառը: Այնտեղ կարելի էր թաքնվել հետապնդումից: Առաջին սուլոցից հետո լսվեց երկրորդը: Վերջապես ամեն ինչ լռեց:

— Կանգնի՛ր,— կանգնեցրեց Սերյոժան Սանյային.— ո՞ւր այդպես թափով: Թռուցիկները պետք է ցրել:

— Ճիշտ որ,— ասաց Սանյան, մի փոքր շունչ քաշելուց հետո:

Նրանք քայլեցին ճանապարհով ու թռուցիկները թողեցին մեկ այստեղ, մեկ այնտեղ՝ ճամփեզրի թփերի մոտ, առուներում և ճանապարհի մոտերքը:

Կես ժամ հետո բոլոր թռուցիկները ցրված էին:

— Գիտես ինչ, Սա՛նյա. արի հակառակ կողմով վերադառնանք,— ելքը գտավ Սերյոժան.— սուլոցը ոստիկան էր: Կարող է պատահել, որ նրանք սպասում են մեզ անցման մոտ:

Ճանապարհն անցնում էր ճահճով: Տղաները հաճախ թաղվում էին սառը ջրի մեջ: Եղևնիների ճյուղերը ձաղկում էին նրանց դեմքերը:

— Ոչի՜նչ, հասանք տուն՝ ամեն ինչ կչորացնենք,— ոգևորում էր Սերյոժան ընկերոջը:

Սկսեց լուսանալ: Թրջված, հոգնած, բայց գոհ, մտերիմները վերադարձան տուն:

Նրանք գերազանց կատարեցին աքսորականների հանձնարարությունը:

# ՀՈՎԱՁԱՁՈՐԻ ԳԵՐԻՆԵՐԸ*)

Վ. ԱՆԱՆՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ



Վատ էին քնել այդ գիշեր մեր պատանիները և վատ տրամադրությամբ էլ դուրս եկան անձավից։ Բնությունն էլ լավ օր չէր խոստանում. երկինքն ամպամած էր ու մռայլ։ Ուտելիք չկար, փայտ չկար. ի՞նչ տանեին ժայռերում գերի մնացած իրենց ընկերոջը։

Լուռ ու անտրամադիր սկսեցին արմատահան անել թփերը, ճյուղեր ջարդել։

Նրանք շալակեցին ջարդված ճյուղերը և լուռ ու մտախոհ քայլեցին դեպի Դիվային կածանը։

— Սարգի՛ս, ո՞նց ես, Սարգի՛ս,— վերևից ձայն տվեց Աշոտը։

— Լավ եմ... ցավում է...

— Բա որ ասում եմ թողեք էդ անարժանին, մեր գործը շարունակե՞նք...

— Դու ինչ կասես, Հասո՛, իսկի չես խոսում։

— Ի՞նչ խոսեմ, ընկե՛ր Աշոտ, պարզ չի՞ որ...

— Պարզ է, իհարկե,— հաստատեց Գագիկը,— թիերը վերցրեք ճամփան բացենք։

— Ինձ չհասկացար, Գագի՛կ... Մենք՝ քրդերս կամ կազատենք մեր ընկերոջը, կամ կմեռնենք նրա հետ միասին...

Հասոյի այդ կտրուկ խոսքը սթափեցրեց բոլորին էլ։

— Կարծում ես մենք քրդերից պակա՞ս ընկերասեր ենք,— գոչեց օղակավարը և ճյուղերն արագ-արագ ցած թափելով, հրահանգեց.

— Օղակ, շարվի՛ր...

Երբ օղակը շարվեց նեղ արահետում, Աշոտն ասաց հանդիսավոր երդումի նման.

— Մենք Հովազաձորից դուրս չենք գա, մինչև չազատենք մեր ընկերոջը։ Համաձա՞յն եք...

— Համաձայն ենք,— հնչեց միաբերան պատասխանը։

— Դե՛հ, դեպի Կաղնուտը քայլով մա՛րշ...

Երբ տեղ հասան, Աշոտն ասաց.

— Պետք է մի երկար ու բարակ ծառ գտնենք։

Շատ փնտրեցին, վերջապես կանգ առան զույգ ուռենիներից մեկի մոտ։

— Էլի շատ թե քիչ սա բոյ ունի, այս ջահել ուռենին։— Ապա թքեց ափերի մեջ ու սկսեց մագլցել ծառը։

— Հետևեցեք ինձ,— հրահանգեց նա։

Աշոտը հասավ ջահել ծառի գագաթը և ցած կախվեց։ Ծառի գագաթը խոնարհվեց։ Տղան ճոճվում էր օդում...

— Հասո՛, Գագի՛կ, դուք էլ կախվեցեք, չվախենաք։

Երեք պատանիներ ճոճվում էին ծառի խոնարհված կատարին։ Ապա կարծես խուլ տրնքոցներ լսվեցին երկրի ընդերքից, ճրթճրթոցներ. իսկ կատարը դանդաղ կռանում էր ու կռանում։ Վերջապես մարդկանց ծանրությանը նա չդիմացավ և տնքալով ու հեծեծալով ցած տապալվեց։ Տղաները թեթև քերծվածքներ ստացան, բայց բոլորն էլ ուրախացան իրենց այդ փոքրիկ հաղթանակի համար։

— Ճյուղերը ջարդենք՝ կդառնան մեզ համար վառելիք, իսկ ինքը՝ ելարան։ Դե՛հ, սկսենք։

Շատ տանջանքներ կրեցին նրանք, մինչև Դիվային կածանով իրենց անճոռնի ելարանը տեղ հասցրին և փորձեցին գոտիներով կախել ցած։ Բայց կարճ դուրս եկավ թե՛ ելարանը, թե՛ նրա ծայրին կապած գոտիների շարքը։ Ծառն իր ծանրությամբ տղաների ձեռքից խլեց գոտիների ծայրը և գարնվելով ժայռի քիվին, որի խորքում Սարգիսն էր թաքնվել, մնաց կանգնած ապառաժյա պատն ի վեր։

— Սարգի՛ս, մի փորձիր տես՝ կարո՞ղ ես բարձրանալ այդ սանդուղքով,— ձայն տվեց Աշոտը։

— Կարճ է... շատ է կարճ, ո՞նց բարձրանամ,— քիչ հետո լսվեց հուսահատ պատասխանը։

Տղաները արահետին նստած մտածում

*) Սկիզբը տես՝ «Պիոներ» № 11։

էին։ Խելք-խելքի տվին և եկան այն եզրակացության, որ պետք է երկար պարան պատրաստել, կապել եղևնու բնից և ստիպել Սարգսին, որ այդ պարանով իջնի անդունդը։ Միակ «շինանյութը» այդ նպատակի համար կարող էին լինել թեղու ճկուն շիվերը։

Նրանք մինչև երեկո քրտնաթոր աշխատեցին և մինչև ճյուղերի ծայրը մերկացրին դժբախտ ծառը։



...ճոճվում էին ծառի խոնարհած կատարին։

Գիշերն օջախի շուրջը բոլորած, նրանք լուռ պարան էին գործում թեղու ճիպոտներից ու մտածում. իսկ եթե կտրվի այդ պարա՞նը...



Բացվեց հերթական օրը՝ դարձյալ մառախլապատ, դարձյալ չարագուշակ։

Նստել էր Սարգիսը ժայռի նեղլիկ գոգին և կրած սարսափներից կապտած ու ապշահար՝ իր առաջն էր նայում։

— Ջեզ մատաղ, ինձ հանեցեք այստեղից...

— Սարգի՛ս, բա դու միշտ ասում ես՝ ամեն մարդ իրեն համա՞ր։ Դե քեզ համար ապրիր այդտեղ, էլ ի՞նչ ես ուզում մեզանից...

— Սխալ եմ ասել, Աշո՛տ ջան, փրկի՛ր,— մղկտաց տղան։

— Հասո՛, պարանը իրեն տուր։

Սարգիսը ստացավ ճիպոտե պարանը և տնքտնքալով նրա ծայրը կապեց եղևնու բնից ու ցած կախեց։

— Էս պարանը փորձե՞լ եք, որ ինձ եք տվել,— հարցրեց նա։

— Ի՞նչ փորձենք, լղարել, մի հավի չափ ես դառել, չի կտրվի, մի՛ վախենա։

— Չէ, Գագի՛կ, փորձել հարկավոր է... մարդու կյանքի հետ հո չե՞նք խաղում... Սարգի՛ս, պարանը գցիր փորձենք։

Անճոռնի, ծուռ ու մուռ ճոպանը, որ առաջին հայացքից ամուր էր թվում, անպետք դուրս եկավ։ Կապել էին մի ծառի բարձր ճյուղից և ով կախվում էր, ճոպանը կտրըվում էր։

— Այ թե ազատելու էինք, հա՜,— ծիծաղում էր Գագիկը։

Գիշերը նրանք նորից բոլորել էին կրակի շուրջը և լուռ մտածում էին։

Գագիկը և՛ խոսում, և՛ չարչարվում էր մեջտեղից խանձված մի երկար ձողի վրա, որ կիսի, գցի կրակի մեջ։

— Ըմբռնեցի՞ք,— որոտաց Գագիկը ոտքի կանգնելով,— էգուց ևեթ մենք Սարգսին կազատենք գերությունից։ Կաղնու շիվեր կտրեցեք, տաքացնենք, օղակներ շինենք։ Այսինքն, ոչ թե օղակներ, այլ մի երկար շղթա, փայտե օղակներով։



Անուժ և գունատ արևը վաղուց ծագել էր, բայց մեր պատանիները դեռ դուրս չէին եկել քարայրից։ Կարմրած մոխրի մեջ նրանք կաղնու ճյուղեր էին փափկացնում և միացյալ ուժերով կլորացնում, ծայր-ծայրին հասցնում ու իրար վրա դրված ծայրերն ամուր փաթաթում քանդված «պարանի» ճիլոպով։

Ժայռերում լսվում էին Սարգսի աղիողորմ կանչերը.

— Շուշի՛կ, գոնե դու խիղճ ունեցիր... սառչում եմ, փայտ բեր... մի քանի զկեռ...

— Սպասիր, գալիս ենք...— Եվ երբ մոտեցան, Աշոտը սիրտ տվեց.— Քեզ ո՛չ փայտ է պետք, ո՛չ զկեռ։ Հիմա մենք քեզ կազատենք։

— Ինչո՞վ, ո՞նց...

Այդ առեղծվածը դեռ Սարգիսը չէր լուծել, երբ շխկշխկալով մի տարօրինակ շղթա ընկավ իր առաջ, ժայռի թարբերին։

— Ծայրը կապիր եղևնու բնից,— վերևից լսվեց հրամանը։

Քիչ անց անճոռնի շղթան տարուբերվում էր անդունդի վրա։

— Հիանալի է, բայց ափսոս որ կարճ է։

— Եթե տակը փափկացնենք, կթռչի, ոչինչ,— ասաց Գագիկը։

Շրջակայքում ինչքան որ թփեր կային, ջարդոտեցին և նրանց փափուկ ճյուղերը իրար վրա կույտ արին ձորի հատակին, շղթայի ուղղությամբ։ Ապա քանի որ օրը տաք էր, յուրաքանչյուրը հանեց իր բլուզը, թևերը կապեց, ժայռի շվաքից փափուկ ձյուն լցրեց մեջը և դրեց ճյուղերի կույտի վրա։ Դրանով էլ չբավականանալով, նրանք արևելահայաց լանջից սկսեցին հալ ընկած ձյան գնդեր գլորել դեպի ցած։ Ձնագնդերը գնալով մեծանում էին, սկզբում դառնում մի ձմերուկի չափ, ապա հասնում մեծ ու փոքր տակառների մեծության։ Մեծ տանջանքներով այդ գնդերը էլ դրին կույտի վրա. մի բլրակ ստացվեց։ Մինչ այս, մինչ այն՝ կարճ օրը հասավ իր վախճանին, քրտնած պատանիներն սկսեցին դողալ։

— Սարգի՛ս, դե իջիր,— կարգադրեց օղակավարը։

Սարգիսը կռացավ, նայեց անդունդին ու սոսկումով ետ-ետ գնաց։

— Սառն է, օղակները բռնել չի լինի... Թողեք էգուց արևով իջնեմ։ Մութն ընկնում է, ես ո՞նց իջնեմ...

— Լավ, ինչ արած, գնանք,— վճռեց օղակավարը՝ ատամները կրճտացնելով։

Իրենց բլուզները ձյան կույտի մեջ թաղված թողնելով, նրանք բարձրացան քարայր։

— Շուշի՛կ, դու կրակը թեժացրու, մենք վառելիք տանենք նրան։

Ցրտից դողալով և քաղցից տանջվելով, նրանք մի գիշեր էլ անցկացրին, մի ծանր գիշեր։ Ո՞ւմ քունը կտաներ։

Երբ արեգակը բարձրացավ, և ձորը տաքացավ, խումբը ցած գնաց և կանգ առավ թփից կախված «սանդուղքի» առաջ։

— Սարգի՛ս, մի որջիցդ դուրս արի, տեսնենք ինչ ենք անում։

Վարանոտ քայլերով ու վախվխելով տղան առաջ եկավ։

— Իջի՛ր,— հրամայեց օղակավարը։

Սարգիսը ոտքը դրեց շղթայի առաջին օղակին և սկսեց դողդողալով իջնել։

— Ցած չնայես։ Աչքերդ փակիր...

Աշոտի այս խորհուրդը օգնեց։ Վերջապես Սարգիսը հասավ վերջին օղակին, իսկ խումբը ներքևում սրտատրոփ սպասում էր։ Շուշիկը ձեռքերով ծածկել էր աչքերն ու անցել Գագիկի թիկունքը։



...կաղնու ճյուղեր էին փափկացնում...

— Կա՛ց, չշարժվես, շղթան վերջացավ,— հրահանգեց Աշոտը և Սարգսի ոտքը, որ ցած մեկնված հենարան էր փնտրում, ետ գնաց։— Հիմի պետք է կախվես վերջին օղակից ու թռչես։ Չվախենաս, ներքևում փափուկ ձյան կույտ է։

— Փափո՞ւկ։ Հա, երեկ փափուկ էր,— մեքենայորեն ասաց Գագիկն ու իր խոսքի իմաստը նոր միայն հասկանալով, գոչեց.—



...Սարգիսը հասավ վերջին օղակին...

Սարգի՛ս, չշարժվես, կաց ձյունն ստուգենք...

Լավ փափուկ կույտի վրա էր թռչելու Սարգիսը՞... Նախորդ օրվա հալ ընկած ձյան գնդերը գիշերվա սառնամանիքից այնպես էին կարծրացել, որ ավելի շուտ ճերմակ քարակույտի էին նման, քան ձյան բլրակի։ Ի՞նչ ժամանակին գլխի ընկավ Գագիկը...

— Վեր բարձրացիր,— հրահանգեց օղակավարը։— Դրա համար են ասում՝ երկու խելքը մեկից լավ է։ Հիմի հավատացի՞ր, օղակավա՛ր, գոնե մեր բլուզները ազատենք։

Թաց ձյունը սառել էր բլուզների մեջ ու այնպես կպել, որ նրանցից պոկ կգար միայն գարունը բացվելիս։

— Կրակ անենք, տղե՛րք, առանց կրակի չի լինելու։

Մինչև կեսօր նրանք զբաղված էին իրենց զգեստները սառույցից ու ձյունից ազատելու գործով։ Իսկ Աշոտը և Հասոն զբաղված էին նոր օղակներ պատրաստելով։

— Սարգսին ազատելը էլի հետաձգվեց վաղվան,— արդեն ուժասպառ հայտարարեց Աշոտը։— Սարգի՛ս, շղթան արձակիր, թող ընկնի։

— Սպասեցեք, գլխումս հանճարեղ մտքեր ծնվեցին,— տեղից վեր թռավ Գագիկը։— Մենք հիմա կազատենք մեր խմբի ամենասիրելի ու ամենից արժանավոր անդամին, շատ մենակ մնաց, ոտքերս քոռանան նրա համար...

— Սարգի՛ս, քո ելարան-ծառը այնպես ամրացրու, որ վերև բարձրանալիս չշարժվի։ Կարո՞ղ ես։

— Ամուր է, ծայրը մտցրել եմ ժայռի ճեղքի մեջ, վերևի ծայրն էլ երկու քարի արանքում է,— լսվեց թույլ ու դժգոհ պատասխանը, որին հետևեց տղայի հուսահատ քրթմնջոցը.— Վա՜յ, վա՜յ, պապա ջան։

— Գնանք, տղերք, գնանք ազատենք Սարգսին։

Ընկերները թեև չգիտեին Գագիկի մտադրությունը, բայց շղթան վերցնելով, թույլ-թույլ հետևեցին նրան։

— Մի ասա, միտքդ ի՞նչ է,— ճամփին անհամբեր հարցրեց Աշոտը։

— Չեմ ասի։ Ուզում ես գլուխս յուրացնե՞ս...

Երբ խումբը կանգ առավ Դիվային կածանի այն մասում, որից ներքև Սարգսի ապաստարանն էր, Գագիկը ճոպանը փաթաթեց արահետի եզրին ցցված քարին և փայտե շղթան կախեց ելարանի ուղղությամբ։

— Սարգի՛ս, օղակները հասա՞ն գերանին,— հարցրեց նա.

— Հասան...

— Դե, գերանով վեր բարձրացիր։ Օղակավա՛ր, հիմի ըմբռնեցի՞ր։

Ընկերները ժպտում էին Գագիկի այն մըտքից, որ վերջապես գտնվել էր Սարգսին ազատելու հնարը։

Մինչ նրանք սպասողական դրության մեջ էին, մոտիկից տնքոցներ լսվեցին։

— Օ՜ֆ, էս անտեր քա՜րը...

— Ոչի՜նչ, անուշ ջան, մարդ էլ ցավից կտնքա՞... Հասա՞ր ելարանիդ ծայրին, հա՞։ Դե հիմի էլ օղակներով բարձրացիր, պատրաստի սանդուղք է, չէ՞...

Սարգիսը չէր երևում, բայց քարին փաթաթած ճոպանն սկսեց ցնցվել, որից պատանիները հասկացան, որ այժմ էլ նա փայտե շղթան է իրեն համար ելարան դարձրել։

Ճոպանը դադարեց ցնցվելուց, ներքևից հեծկլտոց լսվեց։

— Ինչո՞ւ չես բարձրանում,— անհամբեր հարցրեց Աշոտը։

— Իմ ծանրությունից օղակները ձգվելպինդ կպել են պատին։ Ո՛չ բռնել է լինում, ո՛չ ոտք դնել... Մնացել եմ օդում։ Վա՜յ, մամա ջան...

— Չոմբախս մեկնենք, թող ծերիցը բռնի,— առաջարկեց Հասոն և ցած մեկնեց իր մահակը։

— Չի հասնո՞ւմ։

— Չէ... վա՜յ... ինչ անեմ, իջնե՞մ...

— Սուս մի անի, ախպե՛ր ջան, քաշդ կպակասի,— խորհուրդ տվեց Գագիկը։— Կանգնիր ու ձեռքդ մեկնիր, տես հասնո՞ւմ է։

— Հասա՞վ։ Դե երկու ձեռքով ամուր բըռնիր մահակի ծայրից ու ոտներդ քարի ցցունքներին դնելով՝ արի, մենք կօգնենք։

— Ուժ տուր...

— Ետ չնայես...

— Հասար, հա՜...— փայտը քաշում և հետն էլ սիրտ էին տալիս ընկերները։

Վերջապես նրանք վեր քաշեցին իրենց ընկերոջը։

Մահից նոր ազատված մարդու հուզմունքով, Սարգիսը ցանկացավ չոքել իր ազատարարների առաջ, բայց Աշոտը կանխեց նրան. թևը բռնեց, վեր քաշեց և բարեկամաբար ասաց.

— Հարկավոր չի, Սարգի՛ս... Բայց այսուհետև իմացիր, որ կոլեկտիվից դուրս կյանք չկա... Իսկ եթե կա էլ, մեր ուզած կյանքը չի դա։




Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

1

Նրան բոլորը Շեկո են ասում, բայց իսկական անունն Արամ է։

Մի օր Շեկոն եկավ, թե՝ գիտե՞ս, քեզ համար մի լավ պատմվածք եմ բերել, կարդա։ Դե ի՞նչ կա որ. ես էլ վերցրի նրա բերած ամսագիրը, որտեղ տպագրված էր պատմվածքը, ու դեռ շնորհակալություն էլ հայտնեցի՝ ինչպես հարկն է։ Պատմվածքում Վովկա Գրուշին անունով մի տղա սուզանավ է, կառուցում և երբ գետում փորձարկում է, այդպես էլ սուզված մնում է ջրի տակ ու ո՛չ դես, ո՛չ դեն։ Տղաներն հազիվ են ճամբարից օգնության հասնում ու փրկում սուզանավի մեջ մտած Վովկային։

Երբ պատմվածքը կարդացի, գլխի ընկա, որ Շեկոն ինձ ձեռ է առել։ Դե, նա գիտեր, որ ես պատանի նավաշինարարների մրցումների համար սուզանավի մոդել եմ պատրաստում։ Բայց, իմ կարծիքով, նա իր նպատակին չհասավ։ Նախ՝ ես մոդել էի պատրաստում և ոչ թե սուզանավ, որ մեջը նստած ճամփորդեի։ Երկրորդ... հենց բանն էլ այդ երկրորդի

մեջ է։ Երբ ես սկսեցի մտածել, թե ինչու Գրուշինը մնաց ջրի տակ՝ այդտեղ էլ գտա իմ մոդելի սուզվելու գաղտնիքը։

Հաջորդ օրը, երբ դպրոց գնացի, տեսա, որ



Ես ճագիվ էի ծիծաղս պահում...

Շեկոն Սպարտակի հետ կանգնած նայում են ինձ ու ժպտում։ Երևի սպասում էին, թե կսկսեմ Արամի հետ կռվել։ Բայց ես շատ քաղաքավարի մոտեցա նրանց, ամսագիրը վերադարձրի ու հանգիստ ասացի.

— Շատ լավ պատմվածք էր, ուղղակի հիանալի։

Նրանք մնացին զարմացած։ Սպարտակը նույնիսկ մի փոքր հիասթափված էր երևում։

Դուք կարծում եք, թե ես սո՞ւտ ասացի. ոչ։ Այդ պատմվածքը դուք էլ կարող եք կարդալ։ Դա Յու. Սոտնիկի «Վովկա Գրուշինի «Արքիմեդը» պատմվածքն է. կարդացեք՝ կըտեսնեք։ Իսկ Շեկոն, երևի, անհարմար դրության մեջ ընկավ. ո՞վ գիտե, թե նա ինչ զվարճություն էր խոստացել Սպարտակին։ Նա իմ հետևից «Արքիմեդ» գոռաց, բայց այդ էլ չօգնեց։ Ես չլսելու տվեցի, մոտեցա մեր դասարանցի Կարոյին ու սկսեցի բարձրաձայն պատմել վոլեյբոլի երեկվա մրցումների մասին, թեև գիտեի, որ Կարոն էլ այնտեղ էր։

2

Թե ինչպես է ձուկը լողում, ինչպես է նա սուզվում ջրի տակ և բարձրանում վեր, այդ ես գիտեի։ Բայց չէ՞ որ մոդելը կենդանի ձուկ չէ, որ օդափամփուշտում օդ ընդունի կամ դուրս մղի։ Իսկ սուզանավում այդ կատարում են մարդիկ հատուկ մեքենաների միջոցով։ Ճիշտ է, նրանք օդի փոխարեն ջուր են օգտագործում։ Իսկ ե՞ս... Ե՞ս ինչ պիտի անեի։ Իմ մոդելում նույնիսկ քրոջս տիկնիկը չէր տեղավորվի, էլ ո՞վ պիտի ջուրը դուրս մղեր ու ներս ընդուներ։ Հենց այս էր, որ ես գլխի ընկա «Վովկա Գրուշինի «Արքիմեդը» կարդալիս։

Արամն ու Սպարտակը ինձ մոտ եկան այն ժամանակ, երբ ես հղկում էի մոդելիս կողերը։ Նրանք սկզբում ցույց տվեցին, թե հենց այնպես են եկել, բայց ես շուտով հասկացա նրանց այցելության նպատակը։

Սպարտակն սկսեց հեռվից։ Նա իբր պատահմամբ հարցրեց Արամին.

— Պատերազմում ավելի շատ սպահականա՞վն է պետք գալիս, թե՞ սուզանավը։

— Դե՜, իհա՛րկե, սու...— բայց նա անմիջապես ուղղեց իրեն։— Ը՜մ... ը՜ս... իհարկե, պահականավը։

Ես հազիվ էի ծիծաղս պահում, իսկ Սպարտակն ուշադրությունս շեղելու նպատակով սկսեց սուլել, բայց շատ անհաջող. այնպես, որ ես նրան լռեցրի։ Մի տեսակ անհարմար դրություն ստեղծվեց։ Եվ երբ Արամն առաջարկեց կինո գնալ, մենք անմիջապես համաձայնեցինք։

Կինոյում ու կինոյից հետո տղաներն ըսկսեցին համոզել ինձ, որ հրաժարվեմ սուզանավի մոդելից։ Ես շատ կնեղանայի, եթե չհասկանայի նրանց մտադրությունը։ Ախր նրանք իմ լավն էին ցանկանում։ Անցյալ տարի իմ պատրաստած պահականավի մոդելը մեր շրջանում առաջին տեղը բռնեց։ Ասենք, մեր շրջանում առաջին տեղը բռնելը մեծ բան չէր։ Ընդամենը մի քանի մոդելիստներ կային շրջկենտրոնից և մեկ էլ ես՝ մեր գյուղից։ Բայց, ա՛յ, երբ ես Երևանում, ռեսպուբլիկական մրցումների ժամանակ երրորդ տեղը գրավեցի, արդեն ուրիշ բան էր։ Այն ժամանակ ինձանով հպարտանում էին բոլորը, մեր ամբողջ դպրոցը, թեև սկզբում ոչ ոք չէր հավատում, որ հաջողություն կունենամ։

Երբ ես իմ պահականավն էի պատրաստում, մեր ջոկատի տղաները աշխատում էին դըպրոցի ռադիոհանգույցի վրա։ Նրանք ինձ համոզում էին, որ միանամ իրենց, բայց մեր ֆիզիկայի դասատու ընկեր Մինասյանը թույլ չտվեց. «Թող Գագիկն էլ իր ուժերն այնտեղ փորձի»,— ասաց նա, և տղաները ձեռք քաշեցին։

Պիտի խոստովանեմ, որ մենակ ես չէի, որ հաջողություն ունեցա։ Ռադիոհանգույցն էլ գլուխ եկավ։ Աշնանը ես դրուժինայի հավաքույթում առաջարկեցի մեզ մոտ պատանի նավաշինարարների խմբակ կազմակերպել, բայց պարզվեց, որ դրուժինան ուրիշ պլան ունի։ Նրանք որոշել էին մի նոր, ավելի մեծ ռադիոհանգույց պատրաստել և նվիրել կոլտնտեսությանը։ Բայց ինձ ոչ ոք չէր հրավիրում ռադիոհանգույցի վրա աշխատելու։

— Դու ավելի լավ է կատարելագործիր քո պահականավը և գրավիր առաջին տեղը,— ասում էր շեկլիկ Արամը,— մենք առանց քեզ էլ յոլա կգնանք։

Ես նույնիսկ արդեն սկսել էի պահականավի մոդելը, երբ որոշեցի սուզանավ պատրաստել։ Դե՜, պահականավն ի՞նչ է որ։ Անցյալ տարվա մրցումներին քսան այդպիսի մոդել կար, իսկ սուզանավի մոդել ոչ մի հատ։ Ա՛յ, դա գործ է։ Իսկական սուզանավի նման մոդելը սուզվում է ջրի տակ, հետո մակերես ելնում ու շարունակում առաջ գնալ։ Ա՜յ, թե զարմանք կպատճառի...

Եվ ահա, երբ ես արդեն գտել էի ամենադժվար խնդիրը, երբ մոդելն համարյա պատրաստ էր, ինձ համոզում էին ետ կանգնել։ Ոչ մի դեպքում։

3

Մեր գյուղի մոտ մի ավազան կար։ Դա մի մեծ փոս էր։ Տասներորդցիները ջուր էին լցրել, և մենք ամառները լողանում էինք այնտեղ։ Մոդելը փորձարկելու համար գյուղում ավելի հարմար տեղ չկար։ Դե, հո գետում չի կարելի փորձարկել, այն էլ մեր արագավազ գետում։

Երբ ես տեղ հասա, ավազանի մոտ արդեն շատ մարդ կար։ Մի տեսակ վատ զգացի։ Մի՞թե իմ մոդելի փորձարկումը տեսնելու համար են բոլորը եկել։ Ընկեր Մինասյանն էլ էր եկել։ Նրան արդեն ասել էին իմ մոդելի մասին։ Ինձ տեսնելով, նա մոտեցավ։

— Հապա մի տեսնենք քո մոդելը,— ասաց ընկեր Մինասյանը.— ասում են, թե դու արտակարգ բան ես մտածել։

Ես, իհարկե, դրանից շատ ուրախացա, բայց դեռ փորձարկել էր պետք։ Գուցե ոչինչ էլ դուրս չէր գա։ Եվ ո՞վ է նրան պատմել այս ամենը, ո՞վ է այսքան մարդ կանչել։ Ինչո՞ւ



...հանկարծ չսուզվի՞։

փորձարկման մասին ասացի Շեկոյին։ Ամեն բան նրա սարքածն էր։

— Գագիկի սուզանավն իսկապես տորպեդներ է արձակում,— լսվեց Արամի ձայնը։

— Ի՞նչ կա որ,— ավելացրեց Սպարտակն ու փռթկաց։

Երբ արկղից մոդելը հանեցի, բոլորը շըրջապատեցին մեզ։ Սիրտս դող ընկավ. հանկարծ չսուզվի՞։ Ասենք, ես դրանից չէի վախենում. հանկարծ ու չբարձրանա, էլ ի՞նչ սուզանավ, որ ջրի տակ էլ մնար։ Այդպես քարն էլ է սուզվում։ Ես սկսեցի լարել ռետինե մոտորը։

Մոդելը պետք է աստիճանաբար սուզվեր

հորիզոնական ղեկի թեքության շնորհիվ։ Այնպես էի հաշվել, որ հիսուն մետր ջրի տակով գնալուց հետո մոտորը հատուկ թելի միջոցով կփոխեր հորիզոնական ղեկի դիրքը, և սուզանավը կբարձրանար ու մնացած հիսուն մետրը կգնար մակերեսով։ Սա չտեսնված աղմուկ կբարձրացներ։ Ես պատկերացնում էի, թե ինչ կասեն Երևանում։ Չէ՞ որ այդ իմ գյուտն էր, դա իսկական գյուտ էր։ Երբ ես ամեն ինչ պատմեցի, ընկեր Մինասյանը շատ հավանեց իմ պլանը։ Իսկ Արամն ու Սպարտակը մի տեսակ տարօրինակ տեսք ունեին։ Նրանք մի կողմ կանգնած խոսում էին։ Ինձ թվաց, թե Շեկոն Սպարտակին ինչ-որ բան է համոզում։

Երբ ես նավապտուտակը բաց թողեցի, և մոդելը քիչ-քիչ խորանալով հեռացավ, ինձ թվաց, թե ընդմիշտ կորցրի մոդելը։

Ահա մոդելը բոլորովին սուզվեց։ Անհայտացավ նաև բարակ շրջադիտակը։ Միանգամից բոլորը լռեցին։ Սիրտս այնպես ուժգին էր խփում, որ քիչ էր մնում կրծքիցս դուրս թռչեր։ Ես նայում էի ավազանի մակերեսին և մտքումս հաշվում մետրերը։ Ահա մոդելը շուտով կհասնի ամենավերջին խորությանը... Մի րոպե ևս և ահա փոխվում է հորիզոնական ղեկի դիրքը։ Սուզանավն սկսում է բարձրանալ։ Այս ամենն, իհարկե, ես պատկերացնում էի, իրականում ոչինչ չէր երևում։ Ես աչքս չէի հեռացնում ավազանի այն տեղից, որտեղ, իմ կարծիքով, ջրի երես պիտի դուրս գար մոդելը։

...Բայց ինչո՞ւ է ուշանում, ինչո՞ւ դուրս չի գալիս։ Արդեն անցել էր երեք րոպե։ Ես կորել էի քրտնքի մեջ, զգում էի, որ ամբողջ մարմինս այրվում է։ Բոլորը լարված լռության մեջ էին։ Շեկոն այնպես էր կանգնել, որ ասես ուր որ է իրեն ջուրը կնետի։ Ընկեր Մինասյանն անընդհատ ժամացույցին էր նայում։

...Անցավ տաս րոպե։ Ամեն ինչ պարզ է. իմ մոդելը մնացել էր ավազանի խորքերում։ Մի վիլ սուլոց սթափեցրեց բոլորին։ Ինչպես երազում, ես գլխի ընկա, որ դա Սպարտակն էր։ Ուրիշ ոչ ոք այդպես չէր կարող սուլել։

4

Առաջինն ինձ հասավ ընկեր Մինասյանը։ Նա թևիցս բռնեց ու նստեցրեց այգու կանաչ խոտերի վրա։ Ես վազելուց հևում էի։ Ընկեր Մինասյանն էլ էր հևում։ Քիչ-քիչ մոտեցան աշակերտները։ Ես չգիտեի ինչ անել, ինչպես ծլկել։ Իսկ ընկեր Մինասյանն հանկարծ սկսեց ծիծաղել։

— Վազքի նորմաները բոլորի կողմից համարել հանձնված։

Ծիծաղեցին նաև մյուսները, բայց մի տեսակ, ոչ այնքան ուրախ։ Ինձ թվաց, թե բոլորը խղճում են ինձ։ Լռությունը խզեց փոքրիկ Սուրիկը, որ գլուխը տղաների թևի տակից հանելով ասաց.

— Թող իր պահականավն ավարտի, ի՜նչ մի մեծ բան է սուզանավը։

— Չէ՛, այդ չեղավ, տղանե՛ր,— ասաց ընկեր Մինասյանը,— մի՞թե կես ճանապարհից կարելի է ետ կանգնել։ Գագիկը շատ սրամիտ էր մտածել. պետք է նախ պարզել, թե ինչու այդպես եղավ։

«Պարզ է,— մտածեցի ես,— սիրտ է տալիս»։

Հանկարծ հեռվից լսվեց Արամի ձայնը։ Բոլորս նայեցինք ավազանի կողմը։ Այնտեղից իմ մոդելը ձեռքին դեպի մեզ էր վազում Արամը։ Նա դեռ բոլորովին թաց էր, երկար մազերը թափվել էին աչքերին, թրջված տրուսիկը կպել էր մարմնին։

Բոլորը վազեցին նրան ընդառաջ, միայն ես տեղից չշարժվեցի։

* * *

Որ այսօր իմ սուզանավի մոդելն այսքան լավ լողաց, որ ես եկա ու հասա ռեսպուբլիկական մրցումներին ու մրցանակ շահեցի՝ մենակ իմ շնորհքը չէ։ Ինձ տղաները շատ օգնեցին, իսկ ամենից շատ՝ շեկլիկ Արամը։ Ախր եթե նա, որ ամենալավ լողորդն է, չգտներ իմ մոդելը, ոչ ոք այդ հսկայական ավազանի խորքերում չէր գտնի։ Իսկ եթե չգտներ, չէի իմանա իմ սուզանավի մակերես չբարձրանալու պատճառը։ Պարզվեց, որ նավապտուտակից ղեկին գնացող թելն էր խճճվել։ Հորիզոնական ղեկի վրայի փոքրիկ կոճն էլ ամրացրի Սպարտակի խորհրդով։ Ինչպես տեսնում եք՝ լավ է եղել։ Այս կոճն այլևս չի թողնում, որ թելը խճճվի։

# ՔԱՄԻՆ ՈՒ ԵՂԵՎՆԻՆ

*Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*



Քամին մի պահ
Նայեց չորս կողմ.
Մերկացել են
Անտառ ու հող,
Ու նա փքվեց,
Սուրաց նորից,
Ճյուղեր պոկեց
Զոր ծառերից,
Ծիծաղեց նա
Իր չար սրտում,
Եկավ կանգնեց
Եղևնուտում:
Բայց քամու դեմ
Ինչպես վահան,
Եղևնին է
Կանգնած ահա:
Քամին մեկ էլ
Ուժ է առնում,
Թուփ ու ծառեր
Իրար խառնում
Ու սարն ի վեր
Ցատկոտելով,
Հազար ճյուղեր
Կոտրատելով,
Եղևնուն է
Ցնցում կրկին,
Սակայն՝ ինքն է
Ընկնում գետին...
Ընկնում անզոր
Ու գազազում,
Թափով մի նոր
Վրա վազում,
Աջից-ձախից
Հրում, հրում,
Ուժը հատած
Գետին փռվում.

Ու հարցնում է
Նա եղևնուն.
— Ինչպե՞ս է որ
Չես մերկանում:
Նայիր, չորս կողմ
Ծառ չմնաց,
Ես՝ ձմռան հողմ,
Տերն եմ նրանց.
Շո՛ւտ մերկացիր,
Բարակիրան.
Բայց եղևնին
Ծաղրեց նրան.
— Չե՞ս իմանում
Ա՛յ, խուլականջ,
Թե ինչո՞ւ եմ
Մնում կանաչ.
Ինձ են սպասում
Մանուկները,
Նրանք են իմ
Ընկերները...
Նրանց համար,
Նրանց նման
Ես միշտ դալար
Պիտի մնամ:
Ինձ են սպասում
Մանուկները,
Չեմ տա քեզ իմ
Տերևները:
Ինձնով պիտի
Բացվի տարին,
Իզուր տեղը
Մի՛ խանգարիր...
Քամին լսեց,
Կծկվեց ահից
Ու պուկ-ծլկեց
Կանաչ ծառից:

# ԱՆՏԱՌԻ ՄԵՂՐԸ

Ս. ՕՐԲԵԼՅԱՆ

Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

*Իրիկնադեմ էր. արևն արդեն մոտենում էր հորիզոնին: Նրա շողերն ընկել էին անտառի բացատը, որտեղ արածում էին կոլտնտեսության գառները:*

*Պատանի հովիվները քաղցր զրուցելով դիտում էին Լուսաձորի հարուստ բնությունն ու հոտի շարժումը: Բողար անունով շունը գտնըվում էր հոտի աջ կողմում, իսկ Ալան կանգնած էր հովիվ Ջամիլի կողքին: Մյուս հովիվը՝ Ասադը մագլցեց բացատի միակ ծառը և նրա վրայից սկսեց դիտել արածող գառներին:*

*— Վա՛յ,— հանկարծ ճչաց նա և ձեռքը ծածրակին սեղմած իջավ ծառից: Ջամիլը մոտեցավ ընկերոջը: Ասադի ծածրակը կարմրել էր:*

*— Մեղու է, մեղու, տես ընկավ գետնին. քեզ ի՞նչ ասեմ, այնպես ես սեղմել խեղճին, որ ճխլվել է:*

*Ջնայած սուր ցավին, մեղվի անունը լսելով՝ Ասադը ժպտաց.*



Հանկարծ փչակից դուրս թռավ մի կենդանի:

*— Ջամի՛լ, գիտե՞ս ինչ:*

*— Ի՞նչ:*

*— Կա-չկա այս մեղուները անտառում բուն ունեն:*

*— Ինչի՞ց իմացար:*

*— Արդեն արևը մտնում է. եթե հեռվում ապրելիս լինեին, վաղուց վերադարձած կլինեին իրենց տուն:*

*— Ի՞նչ ես ասում, մեղուն երբեմն նույն օրը փեթակ չի վերադառնում:*

*— Դա ճիշտ է, բայց դա լինում է գարնան և ամռան ամիսներին:*

*— Դա էլ ճիշտ է: Բա ինչպե՞ս գտնենք: Աշուն է, շատ մեղր կունենա:*

*— Ես էլ հենց դրա մասին եմ մտածում. Հնարը գտա:*

*Քիչ առաջ նրանք հաց էին կերել, և մեղրոտ ամանը մնացել էր անլվա: Ասադը մեղրի մնացորդը քսեց մի տաշեղի, դրեց այնտեղ, ուր մեղուներ ավելի շատ կային: Մի քիչ հետո մեղուները հավաքվեցին տաշեղի վրա:*

*Ջամիլը մնաց գառների մոտ, իսկ Ասադը սկսեց հետևել դեպի անտառ թռչող մեղուներին: Քիչ անց այնտեղից վերադարձող մեղուներ երևացին: Նրանք նույնպես մեղր ծծեցին ու թռան նույն ուղղությամբ:*

*Պատանին անցավ ձորը, նստեց ծառի տակ և սկսեց հայացքով հետևել մեղուների շարժմանը: Այդպես նրանց հետքերով նա տաշեղից արդեն հեռացել էր մոտ երեք հարյուր մետր: «Հետաքրքիր է, ո՞ւր են գնում»,— մտածում էր նա:*

*Առաջ գնալով Ասադը հասավ այն ծառին, որի փչակում տեղավորվել էին մեղուները: Արջերն ու կզաքիսները այնքան էին բարձրացել ու իջել, որ ծառի վրա մամուռ չէր մնացել: Տղան նկատեց, որ ծառի վրա մրջյուններ են շարժվում: «Վայ թե արջը հանած լինի մեղրը ու տակը մնացած լինի միայն մրջյունների բաժինը:*

*Այդպես մտածելով նա վերև նայեց և տեսավ մի փոքր անցք, որի շուրջը մեղուներ էին խռնվել: Մեղվանոցի մուտքը ծառի արևերես կողմն էր: Ասադը վեր մագլցեց: Անցքի մոտ պահակ մեղուներ էին կանգնած: Մրջյունները գալիս հանդիպում էին «պահակներին» և ահաբեկված վերադառնում:*

Մեղուները սկսեցին պտույտներ գործել պատանու շուրջը։ Նա արագ իջավ ծառից։

«Ինչ անեմ, որ ինձ չքրքրեն»—մտածեց նա, ծառի տակ թափված չոր մամուռը հավաքեց լցրեց դըպանները և նորից բարձրացավ. բայց այս անգամ շատ զգույշ։ Շորով ծածկելով երեսը, նա սկսեց դիտել շուրջը։ Արջը չանգռոտել էր ծառը, բայց անցքը չէր գտել, որ թաթը մտցնի ու մեղր հանի։ Ասադը գըրպանից մամուռ հանեց և վառեց մեղվի «արկանոցի» առաջ։ Ծխի ազդեցության տակ մե-



— Ի՞նչ մորթի է, Ասա՛դ։

ղուները քաշվեցին փչակի մեջ, իսկ մրջյունները ցրվեցին։ Ապա նա մամուռ խցկեց «արկանոցը» և վառեց։ Ծուխը մտնում էր փչակի մեջ։ Ներսից ինչ որ ձայն լսվեց. կարծես մեկը խեղդվում էր։ Հանկարծ փչակից դուրս թռավ մի կենդանի, ճանկերը խըրեց Ասադի բաճկոնի մեջ։ Պատանին թեև անակնկալի էր եկել, բայց կզաքիսին պինդ սեղմեց կրծքին ու անմիջապես մտցրեց վզից կախված տոպրակը։

Ասադը վերադարձավ ընկերոջ մոտ։ Նա այնքան էր ուրախացել, որ գլխարկը մոռացել էր այնտեղ։ Նա զգուշությամբ բացեց տոպրակը և ցույց տվեց գերի կենդանուն, որ չարչարվում էր դուրս պրծնել։ Դա քնքուշ շագանակագույն աղվամազով և փարթամ պոչով մի գազանիկ էր։

— Ի՞նչ մորթի է, Ասա՛դ։

— Չէ, Ջամի՛լ, իմ ձեռքը չի բռնի սրան մորթել. կուղարկենք Երևանի կենդանաբանական այգի։

Այդ պահին շները հաչեցին. մարդիկ երևացին։ Նրանց մեջ էր անտառապահ Հովհաննեսը։ Եկել էին կոլտնտեսության շինարարության համար գերաններ ընտրելու։ Ասադը շներին սաստեց, մոտեցավ կոլտնտեսականներին և պատմեց իր որսի մասին։

— Ի՞նչ ծառ է,— իր հաստ ձայնով հարցրեց անտառապահը։

— Չորացած ծառ է, գագաթն էլ վաղուց քամին կոտրել է,— պատասխանեց Ասադը։

— Մեզ էլ մեղր կտա՞ս,— կատակով հարցրեց կոլտնտեսական Քյարիմը։

— Ինչու չէ, որսը խփողինը չէ, ուտողինն է,— իր որսորդ հոր առածով պատասխանեց տղան։

— Դե վեր կացեք գնանք։

Մոտերքում որ փչակը լիքը մեղր լինի, ո՞վ հանգիստ կնստի իր տեղում։

Հասան ծառին։ Անտառապահը զննեց կաղնին, թեթևակի զարկեց Ասադի ուսին և ասաց.

— Կտրել կարելի է, չորուկ է։

Այդպիսի դեպքում սովորաբար, ծուխ են բաց թողնում փչակի մեջ, որ մեղուները դուրս գան այնտեղից։ Չէ՛, Ասադը այդպիսի անխիղճ բան չի անի։

Նա պարանի մի ծայրը կապեց ծառի այն մասին, ուր գտնվում էին մեղուները, իսկ

մյուս ծայրը՝ հարևան ծառին։ Նա և Ջամիլը սղոցով կտրում էին չորացած ծառը, իսկ գյուղացիները նայում էին։

— Տեսնենք էս գործից ինչ են դուրս հանում տղաները,— ժպտալով ասում էր Հովհաննեսը։

Տղաները կտրեցին ծառը. փչակը կախված մնաց։ Ստացվեց մի երկար փակ կոճղ, մեջը լիքը մեղր ու մեղու։

Տղաները կոճղը տարան գյուղ։

Այդ օրվանից ամեն անգամ ֆերմայի գառներն արոտ տանելիս, Ասադը հայացքով հետևում էր վայրի մեղուների թռիչքին ու ընկերոջն ասում.

— Ջամի՛լ, դու գառներին մտիկ արա, ես մի տեսնեմ ուր են գնում մեղուները։ Ինչ լինի, որ մեղրով լիքը մի փչակ էլ չգտնեմ...




## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՍԵՆՅԱԿՈՒՄ

Ծ. ՇԱՂԳԱՄՅԱՆ

Ֆոտո՝ Ք. ՍԽՎԱՆՑՅԱՆԻ

— Սվետլանա՛, այստեղ միայն թիթեռները կդասավորենք,— արկղիկի մեջ դնելով սպիտակ բամբակի քուլան, ասում է Մարոն։

Սեղանի՝վրա ինչքա՜ն սաեք չորացած թիթեռներ կան. մեկը՝ երկնագույն, մյուսը՝ դեղին, երրորդը՝ սև, սպիտակ բծերով։ Սիրուն թիթեռները դեռ ամռանն էին հրապուրել պիոներներին։ Եվ նրանք անտառներից, դաշտերից, մարգագետիններից բռնել էին և կոլեկցիաներ պատրաստել հարազատ դպրոցին նվիրելու համար։

Պիոներները բույսերի, կենդանիների շատ տեսակներ ունեն։

— Այս սրվակի մեջ օձը կպահենք,— առաջարկում է Ժենյան։

Այսպես նրանք դասավորում են բնասերի անկյան կոլեկցիաներն ու հերբարիումները։ Նրանցից քիչ հեռու, սենյակի կենտրոնում դրված երկար սեղանի մոտ նստած է մի շիկահեր տղա։ Արևի ճառագայթը լուսամուտից ընկել է Սեթի դեմքին և ավելի արտահայտիչ դարձրել նրա մտախոհ աչքերը։ Սեթը թղթի վրա մատիտով գծեր է քաշում։ Մերթ ընդ մերթ նրա ձեռքը կանգ է առնում, ապա ավելի համարձակ շարժվում։ Կրեմլի բարձր աշտարակն արդեն նկարված է։ Տղայի կողքին նստել է Մարոն։ Նրա թևին փակցված երկու կարմիր շերտիկները ցույց են տալիս, որ ջոկատի խորհրդի նախագահ է։ Նրանք լույս են ընծայում 5-րդ ջոկատի պատի թերթը։

— Որքա՜ն գեղեցիկ է,— մոտենալով ընկերներին հիացած բացականչում է Սվետլանան։

— Մեր թերթի այս համարը շատ լավ է ստացվում,— պատասխանում է Մարոն,— բղթակցությունններն էլ լավն են։

Սեթը թերթի ձախ կողմում հատուկ անկյուն է հատկացնում ժամանցի համար. ձևավորում է նաև գրական բաժինը։

«Մեր ջոկատում մտերմություն կա»,— վերցնելով թղթակցություններից մեկը բարձրաձայն կարդում է Սվետլանան։

Եվ իրոք այդպես է։ Երբ Երևանի Հ. Հակոբյանի անվան դպրոցի 6-րդ դասարանի աղջիկները ուսումնական տարվա առաջին օրը դպրոց եկան, տեսան, որ շատ էր փոխվել նրանց ջոկատը։ Ուրիշ դպրոցներից տղաներ էին եկել։ Նրանք բոլորովին անծանոթ էին։ Անցավ մի քանի օր։ Համատեղ աշխատանքը նրանց մտերմացրեց։ Դասարանում ձեռքից-ձեռք անցավ Սեթի բնագիտության տետրը։ Ինչքա՜ն խնամքով էր կազմված։ Այնտեղ նկարված էին ծաղիկներ, պտուղներ, տերևներ։ Տետրը հիացրեց և

դաստատուին, և պիոներներին: Սեթը առաջին իսկ օրվանից դարձավ բոլորի սիրելին: Նա վստահ պատասխանում էր ուսուցիչների հարցերին, մտերմորեն խոսում ու զրուցում էր ընկերների հետ:

— Պատի թերթի ձևավորման աշխատանքները Սեթին հանձնարարենք,— ջոկատի խորհրդի աշխատանքային պլանը կազմելիս առաջարկեց ջոկատավարը:

Եվ ահա նստած պիոներական սենյակում Սեթը բարեխղճորեն կատարում է տրված հանձնարարությունը:

— Ինձ թվում է, թե կանաչը շատ է,— մի հայացք ձգելով թերթի ճակատին նկատում է Ժենյան:

— Կփորձեմ բաց կապույտը,— համաձայնում է Սեթը:

Այդ պահին պիոներական սենյակի դուռը բացվում է և երկու փոքրիկ աղջիկ անվստահ ներս են մտնում:

— Եկեք, եկեք, աղջիկնե՛ր,— հրավիրում է ավագ ջոկատավարը:



— Մեր թերթի այս համարը շատ լավ է ստացվում:

Փոքրիկները պիոներական սենյակ առաջին անգամն են մտնում: Նրանք հիացած դիտում են իրենց շուրջը, նայում պատի թերթը ձևավորող պիոներներին, օրվա հերթապահներին, ապա սկսում են ջրել սենյակի ծաղիկները, որոնք այնքան շատ են, որ լուսամուտի առաջ կանաչ անկյուն են կազմել: Մեծացել, փարթամացել է ֆիկուսը, փիփերթը, արմավը. չինական վարդն իր ճյուղերն է տարածել: Հաճախ պատանի բնասերները տնային բույսերից կտրում են մի ճյուղ, դնում ջրով լցված շշի մեջ: Մի քանի օրից երևում են բույսի սպիտակ ու թույլ բողբոջները: Ճյուղը փոխադրում են ծաղկամանի մեջ: Այսպիսով նրանք կրկնապատկում, եռապատկում են պիոներական սենյակի ծաղիկների թիվը: Փոքրիկներին հետաքրքրում է չորրորդ դասարանի պիոներ Շահեն Խալաթյանի պատրաստած շոգենավի մոդելը: Ավագ ջոկատավարը վառում է նավի վրայի երկաթյա անոթի մեջ գտնվող բամբակը: Շոգենավը սկսում է սուլել և քուլա-քուլա ծուխ արձակել:

Պիոներները փոքրիկներին պատմում են, որ իրենք պիոներական սենյակում են սովորել շախմատ և շաշկի խաղալ: Այստեղ են կազմակերպում գրքերի քննարկումները, հավաքույթները, զրույցները: Փոքրիկներին հիացնում են պատերին փակցված նկարները, ֆոտոթերթերը: Նրանք երկար կանգ են առնում դրուժինայի դրոշի առաջ, այն պատվանդանի առաջ, որի վրա դրված են փողը, թմբուկը:

Փոքրիկները առաջին անգամ մտնելով պիոներական սենյակ, երազում են այն օրվա մասին, երբ իրենք էլ կարմիր վզկապ կկապեն և կդառնան ճիշտ այնպես, ինչպես պատի թերթ լույս ընծայող պատանիներն ու աղջիկները:



# ԵՌԱՆԴԱԳՈՐ ՋՈԿԱՏԸ

*Մի անգամ, սեպտեմբերի կեսերին, դասարան մտավ վայելչակազմ մի տղա: Նայելով շուրջը նա դիմեց դասարանի կենտրոնում հավաքված աղջիկներին.*

*— Սա ո՞ր դասարանն է:*

*— Վեցերորդ «ա»,— միաձայն պատասխանեցին աղջիկները:*

*— Ուրեմն չեմ սխալվել: Ընկերնե՛ր, դըպրոցի կոմերիտական կազմակերպությունը ինձ ջոկատավար է առաջադրել ձեր դասարանում: Կաշխատենք միասին: Այսուհետև ես ձեր ավագ ընկերն եմ: Ինձ կոչում են Սերգեյ, իմ ազգանունն է Նալբանդյան: Ի՞նչ հարցեր են ձեզ հետաքրքրում:*

*— Ընկե՛ր Սերգեյ,— սկսեց խոսել Սվետան և պատմեց դասարանի կյանքի մասին, կարգապահության խախտողների մասին:*

*— Խորհուրդ եմ տալիս հրատարակել երգիծական պատի թերթ, որտեղ կպատմեք դասարանի թերությունների մասին: Պետք է այնպես անել, որ երկուշաբթի օրը թերթը լույս տեսնի:*

*Զանգը հնչեց:*

*— Ես շտապում եմ դասի. ցտեսությո՛ւն,— հրաժեշտ տվեց ջոկատավարը:*

*Ջոկատավարը գրավեց պիոներների վստահությունը:*

*Նշանակված օրը թերթը, որ աշակերտների ցանկությամբ կոչվեց «Փուշ», փակցված էր դասարանի աչքի ընկնող տեղում:*

*Ամեն մի դասարան մտնող ակամայից կանգնում էր թերթի առաջ: Այսպիսով աշակերտների մեծ մասը հավաքվեց նրա շուրջը:*

*— Նայեցե՛ք, ահա մեր «ճանապարհորդները»...*

*— Բա նկարի տակի մակագրությունը. «Ով վատ է սովորում, նա ոչ մի դեպքում չի լինի իսկական ճանապարհորդ»:*

*— Ահա, ահա, նայեցեք. ճիշտ Ռոբերտի պատկերն է... Նստել է և դասի ժամին հացի գնդիկներով աղջիկներին է խփում:*

*— Իսկ ո՞վ է սա: Երկուսների արանքում չես ճանաչի... Իհարկե, Յոզիկն է:*

*— Իսկ սա Բաղդասարյան Լյոնիկը չէ՞: Նա է էլի: Թողնում է, որ ուրիշներն արտագրեն ստուգողական աշխատանքը և իրեն «հերոս» է կարծում:*

*— Վա՜յ, Ժորան ու Լենան էլ են այստեղ: Սրանից հետո կիմանաք, թե ինչպես պետք է պահել դասի ժամանակ...*

*Այսպես աղմուկով պիոներները քննարկում էին «Փուշը»:*

*Սկսվեց առաջին դասը: Դասարանում այնպիսի լռություն էր տիրում, որ ուսուցչուհին զարմացավ:*

*...Արդեն զգացվում էին առաջին քայլերը: Օրը մի քանի անգամ ներքև էր գալիս Սերգեյը:*

*— Դե՛, ինչպե՞ս է: Դասերի ժամանակ աղմուկ չի՞ լինում, արդյոք երկուս ստացողներ կա՞ն,— հետաքրքրվում էր նա:*

*Եվ ահա հասավ ջոկատի ընտրական հավաքույթի օրը: Պիոներների հետ են գալիս Հռիփսիմե Վազգենյանը և Սերգեյը: Երբ վերջացավ տողանը, ջոկատավարն ասաց.*

*— Պիոներնե՛ր, դրուժինայի խորհրդի որոշմամբ այսօրվանից ձեր ջոկատը № 3 կլինի: Մենք պետք է այնպես անենք, որ առաջավոր լինենք դպրոցում: Այսօր կընտրենք ջոկատի խորհուրդ, կխոսենք հետաքրքիր էքսկուրսիաների, կոլեկտիվ արշավների, սպորտային մրցումների և շատ ուրիշ բովանդակալից գործերի մասին: Ո՞վ է ուզում ելույթ ունենալ:*

*Առաջինը խոսել ցանկացավ Ռոբերտը:*

*— Առաջ արի, մի՛ ամաչիր,— բաջալերելով ասում էին տղաները:*



Հավաքույթն անցավ շատ աշխույժ:

*— Ես... ես մեր դասարանում... մեր դասարանի վատ սովորողներից մեկն եմ... Ինձ անկարգապահ են համարում: Ահա և նկարեցին պատի թերթում. դրա համար ես շատ եմ ամաչում... Ինչո՞վ եմ ես ուրիշներից վատ, ինչո՞ւ պետք է իմ ընկերները ծիծաղեն ինձ վրա: Ամբողջ գիշերը մտածում ու մտածում էի և ահա հիմա ասում եմ, որ պետք է փոխվեմ...*

*Սվետան առաջարկեց օգնել թույլ աշակերտներին և զրույց անցկացնել բարեկամության ու ընկերության մասին:*

*— Իսկ ինչո՞ւ մենք չպետք է ամբողջ դասարանով համերաշխ ու ընկերական լինենք, ամեն ինչ միասին անենք: Մենք պետք է ոչ թե մեր վատ արարքները ծածկենք, այլ իսկական, ազնիվ ընկերներ լինենք,— առաջարկեց Վալյան:*

*Աշակերտները խոստանում էին անել ով ինչ կարող է՝ լուսանկարել, ռեակտիվ ինքնաթիռների մոդելներ պատրաստել, շախմատային մրցում անցկացնել, «Ընկերոջ պատիվը» կինո նկարը ցուցադրել:*

*— Կարելի է մեր ռեսպուբլիկայի հանքաքարերից և շինանյութերից հավաքածուներ կազմել:*

*— Նամակագրական կապ հաստատել մեր երկրի քաղաքների և ժողովրդա-դեմոկրատական երկրների պիոներների հետ...*

*Հավաքույթն անցավ շատ աշխույժ: Ուրիշ հետաքրքիր առաջարկություններ էլ եղան: Ընտրվեց ջոկատի նոր խորհուրդ: Դրանից հետո կարծես ամեն բան այլ ձևով էր ընթանում: Արտադասարանական աշխատանքների հետ միասին լավանում էր կարգապահությունը, ուսման առաջադիմությունը: Բոլոր ուսուցիչները գոհ էին դասարանից:*

*Մոտենում էր ուսումնական տարվա առաջին քառորդի վերջը: Հոկտեմբերյան տոնի նախօրյակին ջոկատի խորհուրդը որոշեց խրախուսել լավագույն պիոներներին: Ջոկատում այլևս չկային «երկուս» ստացողներ: Հետևում էին պիոներների կարգապահությանը նաև փողոցում և հասարակական վայրերում:*

*— Հետաքրքիր է, ո՞ւմ կնկարեն դրուժինայի բացված դրոշի առջև, ո՞վ կստանա պատանի տեխնիկի և պատանի բնասերի կրծքանշանը,— ասում էին պիոներները:*

*Որոշված օրը, երբ բոլորն արդեն տեղավորվել էին դահլիճում, դրուժինայի խորհրդի նախագահը հայտարարեց.*

*— Դրուժինայի խորհուրդը հաշվի է առել երրորդ ջոկատի լավ աշխատանքը և որոշել է ջոկատի խորհրդի նախագահ Սվետային և պիոներներ Կամոյին և Զինային նկարել դրուժինայի բացված դրոշի առջև, իսկ Նինային, Արծվիկին և Սահակին պարգևատրել «Պատանի տեխնիկ» և «Պատանի բնասեր» կրծքանշաններով:*

*Շնորհավորում ենք ձեր հաջողությունները. երբեք չհանգստանաք ձեռք բերածով,— վերջում ավելացրեց նա:*

*Դահլիճում բոլորը ծափահարում էին:*

*— Միշտ միասին,— այս նշանաբանով մենք երբեք չենք նահանջի,— ուրախացած և հուզված ասում էր Սվետան:*

*ՕԼԵԳ ՍԱՐԻՆ*

(Ձերժինսկու անվան դպրոցի 10-րդ
դասարանի աշակերտ)

## ՁՄԵՌ

*Ս. ՄԿՐՏՉՅԱՆ*

Ուրախ է մեր փոքրիկ Արփիկը,
Նա ինչո՞ւ պիտի լա կամ տխրի,
Ինչ տանի ցուրտ ձմեռ պապիկը,
Գարունը կրկին ետ կբերի:
Եվ մի՞թե տխուր է ձմեռը,
Խաղում ես, խաղում ու չես հոգնում.

Ճիշտ է, քիչ սառչում են ձեռներդ,
Բայց զվարթ ու թարմ ես քեզ զգում:
Իսկ երբ միշտ «հինգեր» ես ստանում,
Ե՛վ բուքը, և՛ ձյունն ես մոռանում.
Ասես միշտ արևն է փայլում վառ,
Ձմեռն էլ գարուն է քեզ համար:

Հայրապետ Հայրապետյանը գյուղացու որդի էր: Երբ նա գնաց հայրենի Տանակերտ գյուղի մի տիրացուի մոտ սովորելու, դեռ կարգին դպրոց էլ չկար: Դպրոց ասածը հողե հատակով մի խարխուլ խրճիթ էր: Երեխաները հենց հատակին էլ շոր էին փռում ու շարեշար նստում: Նրանց գլխին կանգնած էր վարժապետը՝ քանոնը կամ ճիպոտը ձեռքին: Դրանցով էր «դաստիարակում» նա իր սաներին:

Չնայած ծեծին ու դժվարություններին, Հայրապետյանը սովորեց: Հետո էլ Թիֆլիսի Ներսիսյան դպրոցն ավարտեց և դարձավ ուսուցիչ: Նա շրջեց Հյուսիսային Կովկասի և Անդրկովկասի հայաշատ վայրերը և շատ մանուկների կրթեց: Ահա մի քանի տասնյակ տարի է, որ երեխաները մայրենի լեզուն սովորել և սովորում են Հայրապետյանի «Այբբենարանով»: Նա կազմել է «Մայրենի լեզու» նաև ուրիշ դասարանների համար: Բայց Հայրապետյանը միայն դասագրքերի հեղինակ և ուսուցիչ չէ: Նա դեռ փոքր էր, աշակերտ, երբ գրեց իր առաջին մանկական ոտանավորները: Առաջին անգամ «Աղբյուր» ամսագրում էր, որ տպվեցին ապագա մանկական գրողի գործերը: Երբ բացվեց «Հասկեր» մանկական ամսագիրը, Հայրապետյանը դարձավ նրա ակտիվ աշխատակիցներից մեկը. սկսեց աշխատել Ղազարոս Աղայանի, Հովհաննես Թումանյանի, Արաքել Խնկոյանի հետ միասին:

Նա գովերգում է հայրենի բնությունը, նրա աննման գեղեցկությունները, լեռները և դաշտերը, զմրուխտ անտառները, դալար պարտեզները: Նա հրաշալի՛ է պատկերում ձնծաղիկի արթնանալը, պայծառ գիշերը, գետակի երգը, պտղաբեր և գույնզգույն աշունը, թռչունների չուն, ձյան առաջին փաթիլների պարը:

Հայրապետյանը սիրում է հայրենի բնությունը: Բայց ամենից շատ նա սիրում է մանուկներին և գրում է նրանց մասին:

Ալեզարդ մանկագիրը գողտրիկ երգեր է գրել մեր մեծ Հայրենիքի, նրա առաջնորդների մասին: Ով չի կարդացել «Լենին պապին», «Ինչքան վարդ կա», «Հե՜յ ջան անցան», «Գիշեր», «Ձնծաղիկ», «Սպիտակ, փափուկ ձյուն է եկել», «Սարյակի բույնը» և այլ ոտանավորներ:

Հայրապետյանը հրատարակել է բազմաթիվ մանկական մեծ ու փոքր գրքեր: Գրել է պատմվածքներ, առակներ, հեքիաթներ, կատարել է թարգմանություններ:

«Հոկտեմբերիկի» («Պիոներ») և «Պիոներ կանչի» հիմնադրման առաջին օրերից Հայրապետյանը նրանց ակտիվ աշխատակիցն է:

Լրացավ Հ. Հայրապետյանի ծննդյան ութսուն տարին: Նա իր կյանքը նվիրեց մանուկներին, եղավ նրանց հետ, նրանց ուսուցիչն ու բարեկամը: Նա այժմ էլ աշխույժ է, եռանդուն և շարունակում է նոր գործեր գրել մեր երջանիկ մանուկների համար:

*Լ. ԱՍՄԱՐՅԱՆ*



*ՀԱՅՐԱՊԵՏ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ*

## ԻԼՅԻՉԻ ԱՉԻԿՆԵՐԸ

Էլեկտրական լույսերը վառ,
Որ փայլում են այսպես պայծառ,
Աչիկներն են մեր Իլյիչի,
Նրանք երբեք էլ չեն հանգչի:
Նայում է նա՝ մեր Իլյիչը,
Մեր թանկագին ուսուցիչը,
Նայում է նա, ժպտում անուշ,
Որ իր խոսքը դարձել է ուժ:

## ՆՈՐ ՏԱՐՎԱ ՆՎԵՐԸ

— Ա՛յ նոր տարի,
Գալդ բարի,
Դու մեզ նվեր
Ի՞նչ ես բերել:

Արդյոք խնձո՞ր,
Չիր ու սալո՞ր,
Թե տանձ ու նուռ,
Չամիչ մի բուռ:
— Ջա՛ն, մանուկնե՛ր,
Թող ձեզ մրգեր
Մայրիկը տա,
Ինձ մոտ չկա:

Ես ձեզ համար
Մի-մի համար
Գիրք եմ բերել,
Մեջը պատկեր:

Սրա նման
Ուրիշ մի բան
Էլ չգտա
Իբրև ընծա:
Գիրքն է տալիս
Մտքեր բարի,
Երգ, ցնծություն,
Խաղեր սիրուն:

# ՏԱՅԳԱՅԻ ԽԱՎԱՐՈՒՄ

Վ. ԱՐԱՄՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

Մինչև Սովետական իշխանության հաստատումը, Ռուսաստանի ծայրագույն հյուսիսում ապրող ժողովուրդների մեջ գոյություն է ունեցել կրոնական մի սովորություն: Հոգևորականները՝ շամանները մահամերձ հիվանդներին խեղդում էին, կարծելով, թե ինքնիրեն հեռացող հոգին կարող էր մոլորվել գիշերների խավարում և երկինք չհասնել: Դրա համար էլ շամանը խեղդում էր հիվանդին և «փրկում» նրա հոգին:

Այս պատմվածքում նկարագրված են այդ ժամանակի վայրենի սովորությունները, որոնց վերջ տվեց Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան:

Տայգաներում իր ընտանիքի հետ թափառում էր մի որսորդ: Նրա ընտանիքը մեծ չէր. երկու աղջիկ ուներ: Մեծ աղջկա աշխարհ գալուց երկու տարի հետո կինը վախճանվեց: Որսորդի ունեցվածքը շատ քիչ էր՝ երեք զույգ լծկան շուն, եղջերուի մորթուց կարած մի վրան, երկու քնապարկ, մի հին հրացան և ոսկրե կոթով մի քանի դանակ: Եթե չհաշվենք ծխամորճն ու ձուկ որսալու կարթը, նա այլևս ոչինչ չուներ: Կնոջ մահից հետո երկու զույգ եղջերու էլ ձեռք բերեց, և երեխաների համար սկյուռի մորթուց կարած վարտիքներ գնեց: Որսորդն արդեն քառասունից անց, միջահասակ, թիկնեղ ու լռակյաց մի մարդ էր: Ամառվա լուսավոր ու ձմռան խավար գիշերներին դուրս էր գալիս քնապարկից, երեխաներին բարի քուն մաղթում և հրացանն ուսին, դանակը գոտուց կախ, թափառում էր վայրի անտառներում: Անցնում էր հեղեղատներն ու գետերը, մտնում կուսական անտառների խորքը, ամպրոպներով ու արհավիրքներով լի կիրճերը՝ որս որոնելու: Մի տեղ ժայռից էր ցատկում, մի ուրիշ տեղ գերաններից բռնած լողալով անցնում լեռնային բուռն գետը, արջից խույս տալիս, կամ գոտեմարտում գայլերի հետ: Ծանր էր նրա կյանքը: Թշվառության ու հոգսի մեջ կամացկամաց ծերանում էր նա:

Աշնան անձրևոտ մի օր էլ որսորդը աղջիկներին թողեց կեչիների փոքրիկ պուրակի վրանում, ապահովեց նրանց թարմ ձկով, պախրայի մսով, հայրական խորհուրդներ տվեց և ծախելու համար վերցնելով սկյուռի, բռնոնդուկի, գորշավիզ աղվեսի մորթիներ ու հապալասի պտուղներ, հրացանը ուսը դցեց և ճամփա ընկավ:

Լուսադեմին նա հասավ Օյ գետը: Գետի ձախ ափին գերանաշեն մի տուն էր կանգնած: Նրա չորս կողմը բազմաթիվ յուրտեր՝ սունկերի նման անկարգ, անկանոն: Յուրտերից հեռու մի բարձր վրան կար. վրանի վրա՝ եղջերուի վեց զույգ եղջյուրներ, գայլի ժանիքներ, արջի մագիլներ, երկու խարազան ու գազանների բրդոտ մորթիներ: Որսորդը երկյուղածությամբ նայեց այդ վրանին: Դա շամանի*) վրանն էր:

Առավոտյան մշուշը սկսեց սահել լեռների լանջերով: Այստեղ ու այնտեղ շները հատհատ հաչեցին. գյուղն արթնացավ: Որսորդը մոտեցավ փայտե տնակին: Մարդիկ սամույ-



Դա շամանի վրանն էր:

րի մեծ-մեծ քուրքերն ուսերին, տնտղեցին որսորդի բերած մորթիները և հեռանալով ասացին.

— Պետք չէ, գրող չարժի:

Մոտեցավ մի ուրիշը:

— Այդ բոլորի համար մի տուփ վառոդ, երկու փամփուշտ, վեց գրոշ, կուզե՞ս:

— Ոչ,— պատասխանեց որսորդը:

Այդ ժամանակ նրանք փակեցին իրենց դռները և ասացին.

---

*) Շաման—հյուսիսային ժողովուրդների հոգևորական:

— Դե՛, ծախիր, որտեղ որ կուզես։

Իսկ երեկոյան կանչեցին շամանին, թե՝

— Այդ որսորդը կամակոր է, բայց մորթիները լավն են։ Ինքը չի ուզում մեր ասած գնով ծախել. վնաս չունի, մենք կարող ենք օգնել նրան։ Նա երկու որբ աղջիկ ունի, լսել ենք, որ «հիվանդ են», աստված կանչում է նրանց։ Օգնիր նրանց, շամա՛ն։ Մեր մարդա-



...իրար հետևից երկու կրակոց լսվեց։

սիրական պարտքն ենք համարում հիշեցնել քեզ մեռնողի հոգու փրկության «օրենքի» մասին։

Որսորդն այդ գիշեր անհանգիստ էր։ Նրա սիրտը կտրտվում էր ցավից։ Փորձեց աչքերը փակել, մոռանալ օրվա դեպքերը, չմտածել մենակ թողած երեխաների մասին, բայց ոչինչ չէր օգնում։ Հայրական սիրտը չէր քնում։ Նա չսպասեց լույսի բացվելուն։ Եվ երբ որսորդի նարտը*) պատրաստ էր վերադառնալու համար, փայտաշեն տնակի մոտից ճամփա ընկավ մի ուրիշ նարտ։ Այս նարտը զարդարված էր խլահավի սև փետուրներով։ Նրա վրա նստած էին վեց հոգի։ Առաջին սահնակում նստած էր շամանը «հոգու փրկության» զգեստները հագին։ Երբ նրանք անցան բլրակից և թեքվեցին դեպի արահետը, որսորդն շտապեց։ Այդ ժամանակ մի մարդ վազելով մոտեցավ նրան ու շնչասպառ ձայնով շշնջաց.

— Շտապիր, շամանը մեկնեց քո յուրտը, հասիր երեխաներիդ։

Այս խոսքերը կայծակի նման շանթեցին որսորդին և նա մտրակեց շներին։

---

*) Նարտ—սահնակների շարան։

Շամանն ու որսորդը դեպի կիրճն էին գնում տարբեր արահետներով, մեկը հյուսիսից, իսկ մյուսը՝ հարավից։ Շամանը շտապում էր, իսկ որսորդն ավելի ևս։ Նա նույնիսկ չէր էլ մտածում հետևանքների մասին։ Հորիզոնը շառագունել էր։ Խավարը գունաթափվում ու նոսրանում էր։ Ծառերի կատարները գծագրվում էին երկնքում, ինչպես սառույցի նախշեր՝ լուսավորված ապակու վրա։

Տայգան սկսեց արթնանալ։ «Երեխաները քնած են հիմա, շամանի նարտը կըմոտենա, նրանք կարթնանան, կսկսեն լաց լինել և շամանը...», մտածեց որսորդն ու հանկարծ նրա մտքի թելը կտրվեց։ Թվաց, թե շամանի չոր ձեռքերը սեղմում են երեխաների կոկորդը։ Նա սարսափեց ինքն իր մտքից ու նորից մտրակեց շներին։ Այդ պահին հեռու բլրակի բացատում երևաց շամանի նարտը։ Նա շատ առաջ էր անցել։ Կհասնի՞ արդյոք որսորդը նրան, չի՞ ուշանա։ Նա սկսեց գոռալ շների վրա։ Կենդանիներն անընդհատ արագացնում էին իրենց վազքը, բայց որսորդն այլևս չէր հասկանում, թե ինչ էր անում։ Նա փոխեց նարտի ուղղությունը, դուրս եկավ արահետից և մտավ անանցանելի տայգան, որպեսզի շուտ հասնի իր վրանը։

Շամանի նարտը սլացավ հավերժական ձյունով ծածկված ձորակով և մոտեցավ երկու արահետի միացման տեղին։ Երևաց կեչիների փոքրիկ պուրակը և երկնագույն մամուռի վրա կանգնած որսորդի հին վրանը։ Որսորդը նկատեց շամանի նարտը և հասկացավ իր սխալը։ Մի պահ շփոթվեց, կարկամեց և քիչ մնաց գիտակցությունից զրկվեր։ Բայց ծանր վիճակը մարդուն զգաստացնում է։ Հանկարծ նա հասկացավ, թե ի՞նչ պետք է անել ու շտապով վերցրեց հրացանը։ Երբ շամանի նարտն արդեն կիսով չափ իջել էր բլրի հետևը, իրար հետևից երկու կրակոց լսվեց։ Կրակողը որսորդն էր։ Շները վերջին մի ճիգով որսորդի նարտը դուրս բերեցին

երկու արահետների միացման տեղը։ Մինչև վրանը մնացել էր քսան քայլ։ Շամանի նարտըն արդեն կանգնած էր վրանի առաջ։ Որսորդի նարտը պոկվեց տեղից և առաջ սլացավ։ Հազիվ մի քանի քայլ էր մնացել, լսվեցին հրացանի պատասխան կրակոցներ։ Տայգան կարծես թե շուռ եկավ որսորդի աչքերում. ծառերը պտտվեցին, խառնվեցին իրար։ Եվ որսորդը տապալվեց գետին։ Բայց նրա գնդակն էլ ջարդել էր շամանի քունքն ու ծնոտը։ Արնաշաղախ շամանը, վրանին հասնելուն պես, իջավ Նարտից ու ներս մտավ։ Երեխաները վախից սկսեցին ճչալ։ Շամանը պարզեց իր չոր ձեռքերը, սեղմեց փոքր աղջըկա քնքուշ վիզն ու անշնչացած երեխայի հետ միասին ինքն էլ փռվեց գետնին։

Անցել էր մի քանի օր։ Որսորդները վրանից քիչ հեռու գտել էին կիսամեռ մի աղջկա, տուն էին բերել, և երբ նա փոքր ինչ ամրացել և սկսել էր խոսել, ճանաչել էին դժբախտ որսորդի մեծ աղջկան։



Տասնյակ տարիներ անցան այդ օրից։ Մի անգամ տայգայում բռնել էին ծերացած մի մարդու։ Նրա աջ քունքի վրայից դեպի ծնոտը ձգվում էր խոր ակոսի նման սևացած մի սպի։ Մի աչքի խոռոչը փուչ էր։ Երբ նրան բերին դատարան, մարդիկ երեսները շուռ տվին։ «Հոգևոր հայրը» մեղադրվում էր անթիվ հանցագործությունների մեջ։ Դատավորը հիշեցրեց որսորդի դեպքը։ Ծերունին շարժվեց տեղում և նրա այլանդակ դեմքի վրայով սահեց հեգնական մի ժպիտ։

— Այն օրվանից, երբ կիրճի մոտ նա կրակեց ինձ վրա, ես այսպես այլանդակվեցի, երեխաներից միայն մեկին ես կարողացա այն աշխարհն ուղարկել, մյուսը՝ կորավ...

Հանկարծ ինչ-որ ճիչ ընդհատեց շամանի խոսքը։ Դահլիճի վերջին շարքերից բարձրացավ թխադեմ մի կին։ Նա գունատ էր ու մռայլ։ Մարդիկ ճանապարհ տվին։ Նա դանդաղ քայլերով մոտեցավ ծերունուն և նրա ջարդված դեմքի վրա տեսավ իր հոր թողած դրոշմը։

— Ուսուցչուհի Նոնե՛ն,— շշնջացին դահլիճում։

Որսորդի ավագ աղջիկը առաջին անգամ տեսավ իրենց ընտանիքի հին դահճին՝ ծեր շամանին։




(Բուլղարական ժողովրդական հեքիաթ)

Նկ. Ռ. ՆԱՆՈՒՇՅԱՆԻ

Շատ հին ժամանակներում ապրում էր մի աղքատ տղա։ Նրա հայրը մեռել էր, իսկ մայրը մեծ չարչարանքով հազիվ էր կարողանում օրվա հացը ճարել։ Ամռանը գամբյուղը ձեռքին նա թափառում էր լեռներում և հատապտուղ հավաքում։ Ապա հավաքածը տանում էր քաղաք և վաճառում։ Տղան դպրոց էր գնում։ Բայց նա նույնիսկ այբբենարան չուներ։ Երբ ծնվել էր տղան, կնքամայրը նրան հորթ էր նվիրել։ Անցել էր յոթ տարի։ Հորթը մեծացել, կով էր դարձել, բայց հորթ չէր ունենում։

Մի անգամ, երբ տղան գալիս էր դպրոցից, մայրը տեսավ, որ նա հոնգուր-հոնգուր լաց է լինում։

— Ինչո՞ւ ես լալիս, բալի՛կս։

— Ես ամաչում եմ։ Իմ բոլոր ընկերները այբբենարան ունեն, նրանք արդեն սովորել են կարդալ, իսկ ես գիրք չունեմ։ Այբբենարանի համար փող տուր ինձ,— ասաց տղան։

— Փող չունեմ, որդի։ Իմ ամբողջ հույսը կովի վրա էր։ Մտածում էի, որ կովը հորթ կբերի, կաթ կունենանք, բայց բախտը մեզնից երես է դարձրել։ Հիմա էլ ուշ աշուն է, սարերում հատապտուղ չկա, նույնիսկ հավամիրգն էլ է վերջացել։ Ո՞րտեղից կարող

*եմ փող ունենալ։ Այսօր չէ, վաղը ձյուն կգա. ի՞նչ պիտի անենք։ Ես էլ չգիտեմ ինչո՞վ պիտի կերակրենք անասուններին. ո՛չ խոտ ունենք, ո՛չ գարման։ Որդի՛ս, կովին տար անտառ, գտիր մի հաստաբուն ծառ և կապիր նրանից, գոնե այդ հոգսից կազատվենք։*

*Տղան կովին տարավ անտառ, կապեց մի ծառից և ետ վերադարձավ։ Երբ նա դուրս եկավ անտառից, մի պառավ կին մոտեցավ կովին։ Նա ապրում էր անտառում և խնամում էր այդ կողմերում ձմեռող թռչուններին։ Պառավը ծառից արձակեց կովին և տարավ իր տնակը։*

*Տուն վերադառնալիս տղան ճանապարհին մի ճնճղուկ տեսավ։ Նա թպրտում էր փոսի մեջ, բայց չէր կարողանում դուրս թռչել։*

*«Խեղճ ծիտիկ, ի՞նչ կլինի նրա վիճակը, եթե վրայով սայլ անցնի։ Անպայման կճզմի նրան իր անիվներով»,— մտածեց տղան, ապա կռացավ, զգուշորեն վերցրեց ճնճղուկին և դրեց իր ծոցը։ Տուն գալով, նա պատմեց մորը, թե որտեղ է թողել կովին և ցույց տվեց ճնճղուկը։*

*— Տուր կատվին,— ասաց մայրը։*

*— Ոչ, մայրի՛կ, ես նրան կկերակրեմ փշրանքներով, իսկ երբ տոտիկներն ամրանան և թևերին փետուրներ աճեն, այն ժամանակ ես նրան ազատ կարձակեմ։*

*Տղան վերցրեց հին զամբյուղը, մեջը չոր խոտ փռեց և այնտեղ դրեց ճնճղուկին։ Նա ամեն օր փշրանքներով կերակրում էր փոքրիկ թռչունին և մատնոցով ջուր խմեցնում։ Իսկ երբ տանը հաց չէր լինում, սոված էր մնում նաև ճնճղուկը։*

*Ձմեռն անցավ։ Ճնճղուկն արդեն մեծացել էր և գարնանային մի տաք օր դուրս թռավ բաց պատուհանից։ Թռավ դեպի անտառը, դեպի այն տնակը, որտեղ ապրում էր պառավը։ Գնաց նստեց նրա ուսին։*

*— Որտե՞ղ անցկացրիր ձմեռը, թռչնի՛կս,— հարցրեց պառավը։*

*Ճնճղուկը պատմեց, թե ինչպես մի աղքատ տղա իրեն հանեց փոսից, կերակրեց և խնամեց մինչև ամրացան իր ոտքերը և թևերի վրա փետուրներ աճեցին։ Պառավի կողքին երկու հորթ տեսնելով, ճնճղուկը հարցրեց.*

*— Ո՞ւմն են այս հորթերը։*



— Խե՜ղճ ծիտիկ...

*— Մեր տան առաջ մի կով կա պառկած, նայի՛ր, նրա հորթերն են։*

*— Իսկ ո՞րտեղից լույս ընկավ այդ կովը։*

*— Անտառում գտա, կապված էր մի ծառի, վախենում էի, որ գայլը նրան պատառ-պատառ կանի, ես էլ արձակեցի և տուն բերեցի։ Ձմռանը ես նրան կերակրեցի թավ անտառի խոտով։ Կերավ այդ խոտը և երկու հորթ ունեցավ...*

*Այդ նույն ժամանակ տղան մորն ասում էր.*

*— Մայրի՛կ, ուզում եմ անտառ գնալ և իմանալ, ի՞նչ եղավ մեր կովը։*

*— Գնա,— ասաց մայրը։*

*Տղան անտառ գնաց։ Ամբողջ օրը փնտրեց, բայց կովը չկար ու չկար։ Մթնեց։ Վախից սկսեց լաց լինել։ Բայց հանկարծ նկատեց, որ ծառերի մեջ կրակ է վառվում։ Նա գնաց դեպի այդ կրակը։ Տղային տեսնելով ճնճղուկը ծլվլաց.*

*— Տատի՛կ, տատի՛կ, շուտ դուրս արի, եկել է ինձ փրկողը։*

*— Ի՞նչ փրկող,— հարցնում է պառավը։*

*— Դե, այն տղան, կովի տերը։*

*Պառավը սիրալիր ընդունեց տղային, հյուրասիրեց կաթնահունցով, տեղ տվեց տնակում քնելու, իսկ վաղ առավոտյան արթնացրեց նրան։*

*— Գնա շուկա,— ասաց տղային — կովին*

ու հորթերին տար այնտեղ։ Բայց միայն կովը ծախիր, հորթերը թող մնան։ Ստացած փողով քեզ համար երկաթյա սայլակ և երկաթյա արոր գնիր։ Կլծես հորթերին և կաշխատես։ Թեև փոքր են, բայց ուժեղ են։

Տղան վարվեց այնպես, ինչպես սովորեցրել էր պառավը։ Նա դեռ բակ չէր մտել, երբ լսեց գյուղական մունետիկի ձայնը։ Նա թըմբուկ էր խփում ու գոչում։

— Լսե՜ք, գյուղի մարդի՜կ, մեր թագավորը մի դաշտ ունի, որտեղ կորեկ է աճում։ Դա հասարակ կորեկ չէ. հասկերը լցվում են ոսկե հատիկներով։ Ով որ մեկ օրվա ընթացքում կարողանա վարել այդ դաշտը, թագավորը նրան կտա այն ամենը, ինչ նա կուզի։ Իսկ ով հանձն առնի վարել մինչև արևի մայր մտնելը, բայց չկարողանա, թագավորի դահիճը կըկտրի նրա գլուխը։

Առավոտ շուտ տղան լծեց սայլը և դուրս եկավ բակից։

— Ո՞ւր ես գնում,— հարցրեց մայրը։

— Գնում եմ թագավորի հողը վարեմ։

— Մի՛ գնա, որդի՛ս, հորթերը փոքր են, չեն կարող վար անել։ Տեսնո՞ւմ ես՝ եղջյուրները նոր են դուրս եկել, ասես թե կաղին լինեն։ Թագավորի դաշտում հողը երկաթի նման ամուր է, իսկ թագավորը շատ նենգ է, նա դիտմամբ է անում, որ սպանի մարդկանց։

— Մի՛ վախենա, մայրի՛կ, իմ արորը երկաթից է։

— Միևնույն է, թագավորը կթռցնի քո գլուխը։

— Չի կարող։

Դաշտ հասնելով տղան սայլից իջեցրեց երկաթյա արորը և լծեց հորթերին։ Հենց այդ ժամանակ էլ եկավ կատաղած թագավորը։ Հեռվից նա բղավում էր տղայի վրա.

— Ի՞նչ ես անում այդտեղ, ա՛յ երեխա։

— Կորեկի դաշտն եմ վարում, երեկոյան կվերջացնեմ,— հանդիստ պատասխանեց տղան։

— Հեռացիր այստեղից։ Գլխիցդ մեծ գործեր ես բռնում։

— Տեսնե՜նք,— ասաց տղան և բռնելով մաճը ձայն տվեց հորթերին ու սկսեց վարել։

Հորթերը որոճալով թեթև առաջ էին գնում, իսկ տղան շվշվացնելով քայլում էր արորի հետևից։ Վարում էր հա վարում, ակոս-ակոսի վրա շարում։ Դեռ կեսօր էր, բայց տղային միայն մի ակոս էր մնացել վարելու։ Թագավորը նայեց, նայեց և տեսավ, որ տղան երե-



Կախարդը հեռացավ։

կոյան դեմ ամբողջ դաշտը կվարի։ Եվ ահա խանգարելու համար նրա մոտ ուղարկեց մի կախարդ պառավի։ Մոտենալով տղային նա ասաց.

— Թո՛ղ, թոռնի՛կս, մի քիչ հանգստացիր։ Տես, թե արևն ինչքա՜ն բարձր է, իսկ քեզ ընդամենը մի ակոս է մնացել։ Դեռ ժամանակ շատ կա, կվարես, նստիր, ես քեզ համար հեքիաթ կպատմեմ։

Տղան հորթերին կանգնեցրեց և նստեց ակոսի մեջ։ Նա սիրում էր հեքիաթներ լսել։ Պառավն սկսեց պատմել։ Պատմելիս նա տըղայի երեսին շաղ տվեց քնաբեր փոշի։ Տղան քնեց։ Տեսնելով, որ տղան քնել է, կախարդը հեռացավ։

Արևը ներքև էր իջնում. մոտենում էր մայրամուտը։ Հորթերից մեկն ասաց.

— Արդեն արևը մայր է մտնում, բայց մենք արտը դեռ չենք վարել։ Կկործանվի մեր տերը, ի՞նչ անենք։

— Ահա թե ինչ,— ասաց մյուսը,— ես կբարձրանամ սարի վրա և եղջյուրով արևը կհրեմ դեպի ետ, կեսօր կլինի, իսկ դու արթնացրու մեր տիրոջը։

*Հորթերը դեն գցեցին լուծը։ Մեկը գնաց դեպի սարի գագաթը, իսկ մյուսն սկսեց լիզել քնած տղայի ձեռքը։ Տղան արթնացավ և նայեց վերև, տեսավ, որ արևը մայր է մտնում։ Վախից ցնցվեց նա։ Բայց հորթն արդեն բարձրանում էր սարը։ Նա իր փոքրիկ եղջյուրով հրեց արևը։ Դարձավ կեսօր։ Այդ ժամանակ հորթը դաշտ իջավ։*

*Տղան վեր թռավ տեղից, լծեց հորթերին, բացեց վերջին ակոսը և գնաց թագավորի պալատը։ Կանչեց չար թագավորին և ասաց.*

*— Դե՛, թագավո՛ր, կատարիր քո խոստումը։*

*Թագավորը կատաղեց։ Նա դողում էր բարկությունից, բայց ի՞նչ արած, խոսք էր տվել։*

*— Խնդրի՛ր, խոսի՛ր, ի՞նչ ես ուզում։*

*— Ուզում եմ,— ասաց տղան,— որ դու հրաժարվես քո գահից. իսկ երբ արտում հասունանա կորեկը, թող պատկանի ամբողջ ժողովրդին։ Չէ՞ որ հողը ոչ թե քոնն է, այլ ժողովրդինը։*

*Թագավորը դեղնեց կատաղությունից, բայց ոչինչ անել չէր կարող։ Նա հանեց թագը, հրաժարվեց գահից և փախավ դեպի վայրի թավուտները։ Իսկ տղան գնաց ամենահմուտ դարբնի մոտ և խնդրեց, որ նա պողպատյա մանգաղ կռի, որպեսզի այդ մանգաղով հնձի ժողովրդական ոսկյա արտը։*

Թարգմ. Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

# ԼՈՄՈՆՈՍՈՎԻ ՈՒՂՂԱԹԻՌԸ

Պ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

*Ինչո՞ւ թռչունը թռչում է, իսկ մարդը՝ ոչ։ Ե՞րբ և ինչպես մարդը ևս կկարողանա թռչունների նման ճախրել ու շրջապտույտներ կատարել կապույտ երկնակամարում։ Այս միտքը հաճախ էր զբաղեցնում ռուս հանճարեղ գիտնական Միխայիլ Վասիլևիչ Լոմոնոսովին։ Երբ Մ. Վ. Լոմոնոսովը ուսումնասիրում էր մթնոլորտում կատարվող մի շարք երևույթները, անհրաժեշտություն զգացվեց իմանալու, թե ինչպիսի ջերմաստիճան կա օդի բարձր շերտերում։ Բայց ինչպե՞ս իմանալ, ինչպե՞ս օդից ծանր գործիքը վեր բարձրացնել։*



*Մեծ գիտնականին հաջողվեց պատրաստել մի ապարատ, որը օդից ծանր գործիքները երկրի մակերևույթից վեր էր բարձրացնում։*

*Երկու հարյուր տարի առաջ, 1754 թվականին, աշխարհում առաջին անգամ ցուցադրվեց թռչող ապարատը՝ ուղղաթիռը։*

*Ուղղաթիռը օդից ծանր, ուղղաձիգ վեր թռչող, ավիացիոն հետաքրքիր ապարատ է։ Նրան երկրից վեր բարձրացնող-տանողը՝ ռոտորն է, ինքնապտտվող օդային պտուտակը, որը կազմված է մի քանի թիակներից։ Օդային պտուտակները կատարում են պրոպելլերի դեր, նրանց շեղակի թևերը ունեն երկու, երեք կամ չորս ծայր։*

*Ուղղաթիռը կարող է ուղղաձիգ վեր սլանալ միանգամից, առանց նախնական վազքի, ցանկացած բարձրության վրա, «կախված» մնալ օդում, պտտվել «կախված» վիճակում, ինչպես և կարող է շարժվել ամեն ուղղությամբ՝ հորիզոնական կամ թեք։ Նա կարող է վայրէջք կատարել փոքրիկ հարթակի և նույնիսկ բեռնատար ավտոմեքենայի բացված թափքի վրա։*

*Ուղղաթիռը շատ հարմար մեքենա է ինչպես օդերևութաբանական ուսումնասիրությունների, այնպես էլ երկրաբանական հետազոտությունների և այլ դիտումների համար։ Նրանով կարելի է օդից ղեկավարել հրանոթի դիպուկ կրակը։ Նա նույնիսկ կարող է թռչել ուժեղ քամու ժամանակ ու միանգամայն ապահով ցած իջնել։*

*Մինչև Հոկտեմբերյան Ռևոլյուցիան Ռուսաստանում ուղղաթիռ ստեղծելու համար որոշ փորձեր կատարվել են։ Ժուկովսկու աշակերտ պրոֆեսոր Բ. Ն. Յուրևի ղեկավարությամբ կառուցված ուղղաթիռը 1912 թվականի միջազգային ցուցահանդեսում արժանացավ ոսկե մեդալի։*

*Ուղղաթիռը գործնական կիրառում ստացավ և վստահելի թռչող ապարատ դարձավ միայն 1930 թվականից հետո, երբ կառուցվեց նոր տիպի ուղղաթիռ, որը բարձրացավ 605 մետր։ Սկսվեցին փորձարկումները։ 1941 թվականին սովետական երկշարժիչ «Օմեգա» ինքնաթիռի հեղինակները՝ Ի. Պ. Բրատուխինը և Բ. Ն. Յուրևը ստացան Ստալինյան մրցանակ։ 1948 թվականից հետո ավիացիայի տոներին Մոսկվա-*

յում ցուցադրվեցին սովետական նորանոր տիպերի ուղղաթիռների թռիչքները։

Ժամանակակից ուղղաթիռների արագությունը մի ժամում հասնում է մինչև 190 կիլոմետրի։ Նրանք բարձրացնում են ավելի քան 1000 կիլոգրամ ծանրություն։ Փորձեր են կատարվում ռեակտիվ ուղղաթիռներ ստեղծելու ուղղությամբ։

Հանճարեղ Մ. Վ. Լոմոնոսովը մեզնից 200 տարի առաջ՝ 1754 թվականին տվեց ուղղաթիռի առաջին սկզբունքը։ Նրա ստեղծման ու օգտագործման առաջնությունը ևս պատկանում է մեր Հայրենիքին։ Աշխարհում առաջին վստահելի ուղղաթիռային թռիչքը կիրառեց Ն. Ե. Ժուկովսկու անվան Կենտրոնական Աերոդինամիկայի ինստիտուտը 1930 թվականին։

# ԱՐԵՎԱԴԱՐՁԱՅԻՆ ԱՆՏԱՌՆԵՐՈՒՄ

Ա. ՕՀԱՆՅԱՆ

Նկ. Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ

Արևադարձային անտառները մեծ տարածություններ են բռնում Հարավային Ամերիկայի Ամազոն գետի ավազանում, Աֆրիկայում՝ Կոնգո գետի ավազանում, Հարավ-արևելյան Ասիայում, Մալայան արշիպելագում և մասամբ հյուսիս-արևելյան Ավստրալիայում։

Արևադարձային անտառ մտնող ճանապարհորդը կարծես թե ընկղմվում է կանաչ բուսական ծովի հատակը, կտրվելով լույս աշխարհից։ Ստորերկրյա քարանձավի պես արևադարձային անտառը աղքատ է լույսով։ Անգամ կեսօրին անտառը ձեզ պարուրում է կանաչ գիշերով։ Երբեմն միայն արևի ոսկե շողը թափանցում է անտառի կանաչ սաղարթակամարի մի հազվագյուտ անցքից և ոսկու պես կաթում անտառի սև հողի վրա։ Սակայն, խավարի մեջ, այստեղ ու այնտեղ դուք տեսնում եք կարմիր բոցկլտացող լույսեր. դրանք մի տեսակ արևադարձային թփուտների վառ կարմիր ծաղիկներն են, որ նման են վառվող մեծ մոմերի լույսերին։

Անտառի կանաչ ծովում փարթամ աճել, միահյուսվել ու խճճվել են վիթխարի ծառերը, լիաններն ու հսկայական ծաղիկները։ Խճճված ճյուղերն ու լիանները կացնով կտրելով միայն հնարավոր է ճանապարհ բացել դեպի անտառի խորքը։ 70—100 մետր բարձրություն ունեցող հսկա ծառերը իրենց բնից ու ճյուղերից արձակում են օդային արմատներ, որոնք կախվում են օդում կամ հասնելով գետնին սնվում նրանցից։ Փոքր բույսերը փաթաթվում են բարձր ծառերին, բարձրանում վեր, հասնում լույսին։ Սրանք ևս արձակում են օդային արմատներ, որոնք իրենց ծաղիկներով կլանում են օդի խոնավությունը և սնվում։ Տարվա չորս եղանակներին, արևադարձային անտառը միշտ միևնույն պատկերն ունի։ Անընդհատ ծառերի մի մասը բողբոջապատում է, մի մասը՝ պտղաբերում, մի մասն էլ տերևները թափում։ Գետնին թափված տերևները պտուղներն ու ճյուղերը հողը ծածկում են փտած բուսական մնացորդների հաստ շերտով։ Այստեղ ու այնտեղ երևում են ծերությունից վայր ընկած հսկա ծառերի փտող, հաստ բները։ Արևադարձային անտառը շատ հարուստ է բազմապիսի պտղատու ծառերով, որոնց պտուղներով սնվում են տեղական



բնակիչները և վայրի կենդանիները: Շատ մեծ տեղ են բռնում այստեղ բազմապիսի արմավենիները: Նրանք հասնում են 50—60 մետր բարձրության և մի քանի մետր երկարությամբ սաղարթներ ունեն: Մարդու համար շատ օգտավետ են փյունիկյան և կոկոսյան արմավենիները: Նրանց պտուղները՝ արմավը (խուրմա) և հսկայական ընկույզը համեղ ու սննդարար ուտելիքներ են: Կոկոսյան ընկույզի միջուկից ստացվում է յուղ՝ ուտելու և լուսավորության համար: Կոկոսյան արմավենու տերևներով ծածկում են տների տանիքները, նրա բունն օգտագործվում է որպես շինանյութ, իսկ թելիկներից գործվածքներ են պատրաստում: Ոչ պակաս օգտավետ է բամբուկը, որից պատրաստում են զենքեր, խողովակներ, կահ-կարասի և այլն: Այստեղ, արևադարձային անտառում դուք կտեսնեք նաև հացի և կաթի ծառեր: Հացի ծառը շատ բարձր է, խոշոր տերևներով: Նրա բնի և ճյուղերի վրա կան սեխի նման պտուղներ, որոնց ալյուրանման միջուկից թխած հացը ցորենի հացի համ ունի: Երկու ծառի պտուղները բավական են մի մարդու՝ ամբողջ տարին կերակրելու համար: Իսկ կաթի ծառի կեղևը տալիս է մեծ քանակությամբ կաթ, որն իր համով շատ նման է կովի կաթին: Ահա հսկայատերև բանանը՝ վարունգաձև դեղնագույն պտուղներով, որոնց համեղ միջուկն ուտում են հում կամ տապակած: Ահա անանասը, որի պտղի միջուկը ձմերուկի պես հալվում է մարդու բերանում, լցնելով այն քաղցրաթթու, անուշահոտ հեղուկով: Այստեղ են նաև ոսկեգույն պտուղներով սեխի ծառը, կակաոյի, սուրճի ծառերը, կաուչուկատու ծառը, թեյի թուփը:

Արևադարձային անտառի կենդանական աշխարհը շատ հարուստ է: Այստեղ կան փղեր, վագրեր, ռնգեղջյուրներ, բազմապիսի կապիկներ, վիշապ օձեր, մողեսներ, հսկա թիթեռներ ու հսկա սարդեր, միջատներ, գույնզգույն թութակներ, աղավնիներ և այլն: Մեծ գետերի վարարումների ժամանակ, երբ



ջուրը հեղեղում է անտառը, մինչև անգամ կոկորդիլոսներ են լողում արևադարձային անտառի հաստաբուն ծառերի արանքում: Լուսաբացին վայրենի փղերի հոտերը դանդաղ շարժվում են անտառով դեպի ջրառատ գետերը ջուր խմելու: Հանկարծ խրտնելով որևէ ձայնից, փղերը կատաղաբար փախչում են՝ իրենց ճանապարհին ջարդ ու փշուր անելով ամեն ինչ:

Չնայած բազմաթիվ ու բազմապիսի կենդանիների ու գազանների բնակությանը, արևադարձային անտառը լուռ է և խորհրդավոր: Միայն առավոտները և երեկոները թռչունների ճռվողյունը, ծղրիդների ու ձայնեղ միջատների ձայները, կապիկների աղիողորմ կանչերը անտառը լցնում են աղմուկով: Կեսօրին շոգը խեղդող է դառնում, և բոլորը լռում են: Անտառի ծառերի փարթամ տերևները շոգից թուլացած կախվում են, ծաղիկներից կամացուկ ընկնում են հաստ ու կենտ թերթիկները: Երբեմն լռության մեջ հանկարծ լսվում է մի հուսահատական ճիչ: Դա որևէ գազանի հոգևարքի ճիչն է վագրի ճանկերում կամ վիշապ օձի սառը գրկում:




*Ց. ԱՂԱՍԱՐՅԱՆ* *Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ*

Ռուբիկը ֆիկուսի տերևը տրորեց և քամեց կաթնահյութը: Այդ գործը նրան հրճվանք պատճառեց: Ուզեց երկրորդ տերևը պոկել, բայց քույրը բարկացավ.

— Մտադիր ես տերևազո՞ւրկ անել այս գեղեցիկ ծառը:

— Թող, ես ուզում եմ կաուչուկ ստանալ,— ասաց Ռուբիկը:

— Եթե կաուչուկ ստանալն այդքան հեշտ լիներ, տասը տարում քառասուն հազար հնդկացի չէր պակասի,— միջամտեց պապը, որը բնագիտության դասատու էր:

— Ինչո՞ւ է պակասել, պապի՛կ,— հարցրին երեխաները:




— Հևեյան կաուչուկատու բույս է, որը շատ էր տարածված Բրազիլիայի անտառներում. իսկ Բրազիլիայի կառավարությունը դաժանորեն աշխատեցնում ու շահագործում էր հնդկացիներին: Քառասուն-հիսուն գրամ հևեյայի հյութ հավաքելու համար նրանք օրական տասնհինգ կիլոմետր պետք է թափառեին անտառում, որովհետև հևեյայի բույսերն իրարից հարյուր մետր հեռու են աճում:

Հավաքելուց հետո, նրանք փայտե թիակը թաթախում էին հևեյայի հյութի մեջ և պահում խարույկի սպիտակ ծխի վրա: Երբ հյութի ջրային մասերը գոլորշիանում էին, նորից էին թաթախում, նորից չորացնում, մինչև թիակի վրա կաուչուկի մի զանգված գոյանար:




Այդ գործը հյուծել էր նրանց: Յուրաքանչյուրից ամիսը քսանհինգ կիլոգրամ կաուչուկ էր պահանջվում: Հավաքած կաուչուկը հանձնում էին տասը օրը մեկ անգամ: Հանձնելիս նրանք սարսափահար նայում էին կշեռքին: Երբ պահանջված քանակից պակաս էր լինում, նրանց պառկեցնում էին գետնին և գազանաբար ծեծում, սպանում:

Ահա թե ինչու 1910 թվականին հատուկ հանձնաժողովը պարզեց, որ տասը տարվա ընթացքում միայն Պուտումայոյի շրջանում հիսուներկու հազար մարդուց մնացել է մոտ տաս հազար մարդ: Այդ ժամանակամիջոցում մշակվել էր չորս հազար տոննա կաուչուկ: Դուրս է գալիս, որ կաուչուկի յուրաքանչյուր տոննան տասը մարդկային կյանք է խլել: Իզուր չեն նեգրերն ասել՝ «Կաուչուկը մահ է»: Հնդկացիներն ասում են կաուչու, որ նշանակում է ծառի արցունք: Կոլումբոսի երկրորդ ճանապարհորդության ժամանակ իսպանացիներն առաջին անգամ հնդկացիների մոտ տեսան կաուչուկը:




— Մի՞թե Եվրոպայում կաուչուկ չկար,— զարմացավ Շողիկը:

— Կաուչուկը Եվրոպա մուտք գործեց 1770 թվականին, բայց այն ժամանակ կաուչուկե կոշիկները կարելի էր գործածել միայն անձրև օրերին, որովհետև արևի տակ հալվում էր, իսկ սառնամանիքին կոտրվում ապակու պես:

— Այժմ գտել են մշակման եղանակը: Կաուչուկը տաքացման միջոցով միացնում են ծծմբի հետ և ստանում դիմացկուն ռետին: Այժմ մեր երկրում կան կաուչուկի բազմաթիվ գործարաններ: Կաուչուկ այժմ ստացվում է սպիրտից, կարտոֆիլից, կոկսագիզից, խատուտիկից, որի կաուչուկատվությունը 1932 թվականին պարզեց կոլտնտեսական Սպիվանչենկոն:

Այս խոսակցության ժամանակ երեխաները նորից հիշեցին կաուչուկ մշակող հնդկացիներին և կրկին վշտացան:

Պապը հասկացավ թոռների տրամադրության պատճառը և նրանց տրամադրությունը բարձրացնելու նպատակով հիշեցրեց կրկնակոշիկների կոտրվելը:



# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

## «ԿՈՐԱԾ ՁԵՌՔԵՐ»

*Սովետական երկրի բոլոր անկյուններում ուրախություն է տիրում: Մեր հզոր գործարաններում ու հանքերում, լայնարձակ դաշտերում ու*




*այգիներում աշխատող բազմամիլիոն բանվորներն ու կոլտնտեսականները անհուն սիրով և նվիրվածությամբ աշխատում են հարազատ երկրի համար, երեխաների պայծառ ապագայի համար:*

*Ուրախ, հետաքրքիր ու բովանդակալից է անցնում նաև մեր մեծ երկրի երեխաների կյանքը: Բայց աշխարհի բոլոր կողմերում ու անկյուններում չէ, որ կյանքն այսպես ուրախ ու հետաքրքիր է անցնում...*

*Այս տարի Հայպետհրատը լույս ընծայեց մի գիրք, որը կոչվում է «Կորած ձեռքեր», այդ գիրքը գրել է բանաստեղծ Սարմենը: Դրա միջոցով հեղինակն իր պատանի ընթերցողներին ծանոթացնում է կապիտալիստական երկրների աշխատավորների անտանելի կյանքին: Այդ երկրներում վատ է անցնում նաև երեխաների կյանքը: Նրանք մանկություն չեն տեսնում, չեն խաղում, չեն ուրախանում: Իրենց ծնողների գործազրկության և աղքատության պատճառով, երեխաներն ստիպված են լինում ծանր աշխատանք տանել: Փոքրիկներն աշխատում են մեծերի հետ հավասար՝ առավոտից երեկո, որպեսզի իրենց վաստակած չնչին կոպեկներով կարողանան ծնողների ծանր հոգսերը թեթևացնել: Դժվարին աշխատանքներ կատարելով, նրանցից շատ-շատերը անվերադարձ կերպով կորցնում են առողջությունը՝ վաղ հասակից դառնում թոքախտավորներ, հաշմանդամներ և ինչպես գրքի հեղինակն է ասում, դեռ պատանի չեղած՝ ծերանում են:*

*«Կորած ձեռքեր» գիրքը կարդալով դուք շատ բան կիմանաք Թյուրքիայում գտնվող հայ և մյուս ժողովուրդների դեմ եղած հալածանքների մասին: Դուք կիմանաք, թե ինչպես փոքրիկ Արամը աշխատանքի ժամին ընկավ մեքենայի ատամների տակ, զրկվեց իր երկու ձեռքերից և դարձավ թե՛ աշխատանքի և թե՛ կյանքի համար հավիտյան կորած մարդ:*

*Հեղինակը հուսադրում է իր հերոսին՝ Արամին, աշխատավոր ժողովրդին, որ նրանց մոտ էլ շուտով կշողա նոր կյանքի այգը:*

*Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ*

## «ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ»

«Մանկությունը լեռներում» գրքում Վ. Անանյանը պատկերում է իր տրխուր մանկությունը: Դա անցյալի հայ երեխաների ծանր մանկությունն է: Հայաստանում սովետական կարգերի հաստատումից առաջ, շատ ու շատ երեխաներ զուրկ էին դպրոց գնալու հնարավորությունից: Նրանք իրենց օրերն անց էին կացնում քաղցի ու զրկանքի մեջ:

Ահա մի պատմվածք: Գյուղի հարուստ Արոյի որդիները հագնվում են լավ, դպրոց են գնում, անհոգ կյանք վարում, իսկ աղքատ գյուղացիների երեխաները չեն կարողանում դպրոց գնալ, հաճախ սոված են մնում:

«Մեր վրեժը» պատմվածքում նկարագրվում է, թե ինչպես հարուստ Թորոսենց Արոն այնքան նենգ մարդ է, որ չի ցանկանում նույնիսկ արևը ուրիշներին լույս տա: Երբ իր կինը լըվացք է փռում, նա ուրիշներին արգելում է այդ օրը շոր փռել:

— Արևն իմ կնոջ փռած շորերը պիտի առաջին հերթին չորացնի,— ասում է նա:

Իսկ ինչքա՜ն լավ է գրված «Ստյոպա» պատմվածքը: Երբ Կարմիր Բանակը գալիս է Հայաստանը ազատագրելու, հայ աշխատավորները աղ ու հացով դիմավորում են նրան: Ռուս բանակային Ստյոպան հրաշալի տղա է: Երբ նա հյուր է լինում հայ գյուղացու ընտանիքում, բոլորի հետ անմիջապես մտերմանում է:

Ստյոպան շուտով ընկնում է դաշնակների դեմ մղված կռվում՝ վիշտ պատճառելով իր հայ բարեկամներին:

Գրքում ցույց է տրված, թե ինչպես Վարդն առաջ վրաց իշխանի բատրակուհին է եղել, իսկ այժմ սովխոզի առաջավոր բանվորուհի է, Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածու:



Վ. Անանյանի «Մանկությունը լեռներում» գիրքը կարդացվում է հետաքրքրությամբ:

*Ց. ՇՈՂԵՆՑ*

# ՀԵՏԱՔՐՔԻՐ

## ՕՐԱՑՈՒՅՑ




Այս օրացույցի միջոցով ճշտությամբ կարելի է որոշել, թե ամսվա այս կամ այն օրը շաբաթվա որ օրն է լինում:

Օրացույցից կարելի է օգտվել հետևյալ կերպ. ամսվա այն օրը, որը հարկավոր է որոշել, պետք է գումարել այդ նույն ամսի տակ գրված թվանշանին և ստացածը բաժանել յոթի՝ շաբաթվա օրերի քանակի վրա: Երե բաժանումը կատարվում է առանց մնացորդի, ապա այդ օրը կիրակի է, իսկ եթե բաժանվում է 1 մնացորդով, ապա դա շաբաթվա առաջին օրն է, եթե 2՝ երկրորդ օրն է և այսպես շարունակ: Իսկ եթե ստացված թիվը փոքր է յոթից, ապա բաժանում չպետք է կատարել: Եթե գումարումից ստացվում է 1, ուրեմն երկուշաբթի է, 2՝ երեքշաբթի, 3՝ չորեքշաբթի և այսպես շարունակ:

Ենթադրենք ուզում եք իմանալ, թե շաբաթվա որ օրն է նոյեմբերի 10-ը: Օրացույցում նոյեմբերին համընկնում է 1 թվանշանը, ուրեմն 1+10=11. 11:7 մնացորդ կստացվի 4. ուրեմն նոյեմբերի 10-ը շաբաթվա չորրորդ օրն է՝ այսինքն հինգշաբթի:

Այս օրացույցը կազմված է 1955 թվականի համար:

Երեխաներ, դուք էլ փորձեցեք կազմել նմանօրինակ օրացույցներ հաջորդ տարիների համար:

Կազմեց՝ Գ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

## ՈՒՇԱԴԻՐ ՆԱՅԵՑԵ՛Ք ՆՈՏԱՆԵՐԻՆ



Այստեղ գրված է «Ազատություն» բանաստեղծության հեղինակի անունը և ազգանունը: Փորձեցեք կարդալ:

Ծանոթություն. սոլ բանալին չպետք է կարդալ:

Կազմեց՝ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ



## ՓՈՐՁԵՑԵՔ ԴՈՒՔ ԷԼ

Սպիտակ թղթի վրա կապույտ մատիտով գրեցեք որևէ մի բառ: Հետո գրածը կարմիր մատիտով ջնջեցեք այնպես, որ կարդալ չլինի: Ապա վերցրեք մի կտոր կարմիր ապակի և դրանով նայեցեք ջնջված մասին և կտեսնեք այն բառը, որը գրել էիք կապույտ մատիտով:

Ինչո՞վ բացատրել այդ:

## ԻՆՉՈ՞Ւ



1. Երբ մարդը մրսում է, սկսում է ակամայից դողալ: Ինչո՞ւ:

2. Տարվա ո՞ր ժամանակին է, որ էլեկտրական, հեռախոսային, ռադիոյի և այլ փողոցային գծերը կարճանում են:





3. Ինչո՞ւ բաց գուլպան ավելի դժվարությամբ է հանվում ոտքից, քան չորը:

4. Ինչո՞ւ ջուրը հանգցնում է կրակը:



## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

Մեր ամսագրի 1954 թվականի 8-րդ, 9-րդ և 10-րդ համարներում տպագրված «Հետաքրքիր ժամանցի» պատասխաններն են.

№ 8:

1. ՄՏԱԾԻՐ ԵՎ ԳՏԻՐ.— Երկու հայր և երկու որդին միասին երեքն էին՝ պապը, տղան և թոռը: Յուրաքանչյուրին հասավ մեկ խնձոր:

2. Ճանապարհով գնում էին երեք գառնուկ:

№ 9.

1. ՉԱՅՆՎՈՐԴ.—1. Հիմն, 2. Նեպրինցև, 3. «Վարշավյանկա», 4. «Անուշ», 5. Շիշկին, 6. Նովիկով, 7. Վասնեցով, 8. Վալս, 9. Սիմֆոնիա, 10. Անսամբլ, 11. Լեզգինկա, 12. Աբելյան, 13. Նապրավնիկ, 14. Կառնավալ, 15. Լիբրետո:

2. ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ.—1. Գորտ, 2. Ջերմաչափ, 3. Սղոց, 4. Հոր (փոս), 5. Գետ, 6. Մաշկ:

№ 10.

1. ԿՐՈՍՎՈՐԴ.

Ուղղահայաց.— 2. Աղայան, 3. Գավրոշ, 4. Լևիտան, 5. Գորկի, 6. Էլբա, 7. Սմիրնով, 12. Ամերիգո, 13. Տյանշան, 14. Օնեգա, 15. Անիվա, 19. Աքիլլես, 21. Կոմարով, 23. Գլինկա, 24. Ստասով, 26. Տուլա, 27. Յավա:

Հորիզոնական.— 1. Տայգա, 8. Շևցովա, 9. Վիլյամս, 10. Իսակովա, 11. Էտնա, 13. Տանկ. 16. Նանսեն, 17. Դարվին, 18. Գրանիտ, 20. Ուշակով. 22. Կինո, 25. Նեմո, 26. Տոլստոյ, 28. Չեկալին, 29. Սուվորով, 30. Նարվա:

2. ՓՈՐՁԵՑԵՔ ԿԱՐԴԱԼ.— Լերմոնտով:

Ճիշտ պատասխանել են.

Ս. Մոսինյանը (Ալավերդու շրջան), Ե. Գևորգյանը (Ազիզբեկովի շրջան). Մ. Զախարյանը (Լենինական), Ս. Գալստյանը (Կոտայքի շրջան), Թ. Մարալյանը, Կ. Սարոյանը (Երևան), Լաուրա և Լեոնարա Նահատակյանները (Վրացական ՍՍՌ) և շատ ուրիշներ:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկը՝ նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ*




*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 14326։ Պատվեր 1491։ Տիրաժ 5000։ Տպագրական 2½ մամուլ։ Ստորագրված է տպագրության 3/XII 1954 թ.։*

*Գլխհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65, 1954 թ.։*

«ՄԵՆՔ ՉԷԻՆՔ ՀԱՎԱՏԱ ՈՒՍՄԱՆԸ, ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆՆ ՈՒ ԿՐԹՈՒԹՅԱՆԸ, ԵԹԵ ՆԱ ՓԱԿՎԱԾ ԼԻՆԵՐ ՄԻԱՅՆ ԴՊՐՈՑՈՒՄ ԵՎ ԿՏՐՎԱԾ ԼԻՆԵՐ ԵՌՈՒՆ ԿՅԱՆՔԻՑ... ՄԵՐ ԴՊՐՈՑԸ ՊԵՏՔ Է ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆԸ ՏԱ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՀԻՄՔԵՐԸ, ՏԱ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՀԱՅԱՑՔՆԵՐ ՄՇԱԿԵԼՈՒ ՀՄՏՈՒԹՅՈՒՆ, ՊԵՏՔ Է ՆՐԱՆՑԻՑ ԿՐԹՎԱԾ ՄԱՐԴԻԿ ՊԱՏՐԱՍՏԻ»:

Վ. Ի. ԼԵՆԻՆ

«... ՀԱՐԿԱՎՈՐ Է ՄՏՑՆԵԼ ԸՆԴՀԱՆՈՒՐ-ՊԱՐՏԱԴԻՐ ՊՈԼԻՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅՈՒՆ, ՈՐ ԱՆՀՐԱԺԵՇՏ Է, ՈՐՊԵՍԶԻ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԱՆԴԱՄՆԵՐԸ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ ՈՒՆԵՆԱՆ ԱԶԱՏՈՐԵՆ ԸՆՏՐԵԼՈՒ ՊՐՈՖԵՍԻԱ ԵՎ ԱՄԲՈՂՋ ԿՅԱՆՔՈՒՄ ԳԱՄՎԱԾ ՉԼԻՆԵՆ ՈՐԵՎԷ ՄԵԿ ՊՐՈՖԵՍԻԱՅԻ»:

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ

«ԿԱՐԵՎՈՐ Է ՈՉ ՄԻԱՅՆ ԱՅՆ, ՈՐ ԴՊՐՈՑԸ ՏԱ ԶԱՐԳԱՑՈՒՄ, ԱՅԼԵՎ ԳՈՐԾՆԱԿԱՆ ՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ...»

Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱ

«ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՈՒՄ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՀԻՄՆԱԿԱՆ ՏԱՐՐԵՐԻՑ ՄԵԿԸ ՊԵՏՔ Է ԼԻՆԻ»։

Ա. Ս. ՄԱԿԱՐԵՆԿՈ



# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



### ՍԻՐԵԼԻ ԳՐՈՂԸ

«Ամեն մի գործ ստեղծելու ժամանակ իմ աչքի առաջ ունեցել եմ հայ ժողովուրդը, նրա անցյալը, նրա պատմությունը, նրա տխուր ներկան. լավ եմ գրել, թե վատ, նրա համար եմ գրել, նրան եմ կամեցել իմ մըտքերն ու զգացմունքները հաղորդել»: Այսպես է գրել հայ ժողովրդի սիրելի գրողներից մեկը՝ Մուրացանը:

Մուրացանը (Գրիգոր Տեր-Հովհաննիսյան) ծնվել է Լեռնային Ղարաբաղի Շուշի քաղաքում: Մանր էր փոքրիկ Գրիգորի մանկությունը: Ուշիմ ու հարցասեր Գրիգորը սովորում էր Շուշիի թեմական դպրոցում:



Ավարտելուց հետո նա դառնում է ուսուցիչ: Հետո, 1878 թվականին գալիս է Թբիլիսի: Այստեղ առևտրական տներից մեկում նա ծառայության է մտնում որպես հաշվապահ: Եվ մինչև կյանքի վերջին օրերը զբաղվում է հաշվապահությամբ:

Մուրացանն ստեղծագործում էր ազատ ժամերին, երեկոները, գիշերները:

«...Երբ ես նյութական մի փոքրիկ ապահովություն ունեցած լինեի... քանի հատորներ կունենայի այժմ: Գիտե՞ք, ի՜նչ մեծ վիշտ է այս ինձ համար»,— գրել է նա: Նա մահացավ 1908 թվականի օգոստոսին:

Մուրացանը դեռ շատ փոքր հասակից է սկսել գրել: Նրա առաջին ընդարձակ երկը տպագրվել է 1880 թվականին:

Այնուհետև նա գրում է «Ռուզան» դրաման, «Խորհրդավոր միաբանուհի», «Նոյի ագռավը», «Առաքյալը» վեպերը, «Գևորգ Մարզպետունի» պատմավեպը:

Մուրացանը շատ է սիրել գյուղը, գյուղացուն: Դրա համար էլ գյուղը մեծ տեղ է գրավում նրա ստեղծագործությունների մեջ: «Առաքյալը» պատմվածքում տվել է հայ գյուղի ցնցող նկարագիրը: Հիշո՞ւմ եք տիրացու Մոսինի նահապետական դըպրոցը, Սևանի ափին ծվարած Զիբուխլու գյուղի ողբալի վիճակը, կամ կեղտի ու պարտքի մեջ խրված գյուղացիներին...

«Գևորգ Մարզպետունին» հայ գրականության լավագույն պատմավեպերից մեկն է, որի մեջ պատկերված է ժողովրդի պայքարն արաբական զավթիչների դեմ: Վեպի կենտրոնական հերոսը՝ հայրենասեր զորավար Գևորգ Մարզպետունին, կռվում է Հայրենիքի ազատության համար:

Այժմ էլ Մուրացանի երկերը հուզում են ընթերցողներին:

Դեկտեմբերի մեկին լրացավ սիրելի գրողի ծննդյան հարյուր տարին:

### ԽԻԶԱԽ ՕԴԱՉՈՒ՜Ն

Գանգուր մազերով չքնաղ մի երեխա, նստած խաղալիք ձիուկի վրա, նայում է ձեզ: Այս լուսանկարը սըրբությամբ է պահվում Ստեփանյանների ընտանեկան ալբոմում: Այդ երեխան Նելսոնն է, ապագա Մերձբալթյան մրրկահավ Նելսոն Ստեփանյանը:

Նա ծնվել է Շուշի քաղաքում, 1913 թվականին: Բայց մեկ ու կես տարեկան էլ չկար, երբ տեղափոխվեցին Երևան: Նելսոնի մանկության ու պատանեկության տարիներն անցան Երևանում: Նելսոնը սովորում էր Մաքսիմ Գորկու անվան դպրոցում: Նա շատ էր սիրում կարդալ, իսկ ավելի շատ սիրում էր ինքնաթիռի մոդելներ պատրաստել: Ի՜նչ իմանար, որ ապագայում ինքը իսկական ինքնաթիռ է վարելու:

Նելսոնը մտավ կոմերիտմիության շարքերը, գնաց Բաքու, ավարտեց ռազմական դպրոցը: Հետո նրան ուղարկեցին Բատայսկ՝ օդաչուական դպրոց: Անա նա արդեն առաջնակարգ օդաչու է, կոմունիստ:

Սկսվեց Հայրենական Մեծ պատերազմը: Նելսոնն այսպիսի նամակ գրեց հարազատներին. «Քանի դեռ կրծքումս բաբախում է սիրտս, իմ սրբազան պարտքն է՝ մինչև արյան վերջին կաթիլը պաշտպանել սիրելի Հայրենիքը, մեր գեղեցիկ սովետական ժողովրդին, մեր ծաղկած քաղաքներն ու գյուղերը»:

Նելսոնը կռվեց Օդեսայի մոտ, Լենինգրադի մատույցներում: Նա թըշնամիների սարսափն էր: Հակառակորդի ինչքա՜ն նավեր են խորտակվել Բալթիկայի ջրերում Նելսոնի նետած ռումբերից, ինչքա՜ն տանկեր, թնդանոթներ է ոչնչացրել հերոս օդաչուն: 1941 թվականի հունիսից մինչև 1944 թվականի օգոստոսի տասնութը Նելսոն Ստեփանյանը կատարել է 239 մարտական թռիչք: Այդ ժամանակ նա ոչնչացրել է գերմանական հինգ հազար զինվոր ու սպա, խորտակել է գերմանական 80 տանկ, 600 ավտոմեքենա, 40 դաշտային հրանոթ, 60 զենիթային հրանոթ, 130 գնդացրային կետ...



Անա այսպիսի դյուցազուն էր Նելսոնը:

Նելսոնին առաջին անգամ Սովետական Միության Հերոսի կոչում տրվեց, երբ նա կապիտան էր, երկրորդ անգամ տրվեց հետմահու:

Այժմ Երևանի Կիրովի անվան մանկական պարկում իր պատվանդանից արծվային հայացքով դեպի հեռուներն է նայում խիզախ օդաչուն: Շուրջը ծաղիկներ են, մանուկներ, մանկական պարզ ու խնդագին ճիչեր ու ծիծաղ, որոնց համար նա կռվեց և ընկավ հերոսի մահով:

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ԳԵՐԲԵՐԸ

Գինը 2 ռ.




ՌՍՖՍՌ, ՍՍՌՄ, Ուկրաինական ՍՍՌ, Բելոռուսական ՍՍՌ, Ուզբեկական ՍՍՌ, Ղազախական ՍՍՌ, Վրացական ՍՍՌ, Ադրբեջանական ՍՍՌ, Լատվիական ՍՍՌ, Մոլդավական ՍՍՌ, Լիտվական ՍՍՌ, Կիրգիզական ՍՍՌ, Տաջիկական ՍՍՌ, Հայկական ՍՍՌ, Էստոնական ՍՍՌ, Թուրքմենական ՍՍՌ, Կարելա-Ֆիննական ՍՍՌ:

# ԿԱՆՈՆՆԵՐ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԻ ՀԱՄԱՐ





## ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԱՇԱԿԵՐՏ ՊԱՐՏԱՎՈՐ Է՝

1. Համառորեն և հաստատապես տիրապետել գիտելիքներին՝ կրթված ու կուլտուրական քաղաքացի դառնալու և հայրենիքին որքան կարելի է ավելի շատ օգուտ տալու համար:

2. Ջանասիրությամբ սովորել, կանոնավոր հաճախել դասերին, չուշանալ դպրոցի պարապմունքներից:

3. Առանց առարկության ենթարկվել դպրոցի դիրեկտորի և ուսուցիչների կարգադրություններին:

4. Դպրոց գալ բոլոր անհրաժեշտ դասագրքերով և գրապիտույքներով, մինչև ուսուցչի դասարան մտնելը պատրաստել այն ամենը, ինչ անհրաժեշտ է դասի համար:

5. Դպրոց ներկայանալ մաքուր սանրված և կոկիկ հագնված:

6. Դասարանում մաքուր և կարգին պահել իր տեղը:

7. Զանգից անմիջապես հետո մտնել դասարան և գրավել իր տեղը: Դասի ժամանակ դասարան մտնել և դասարանից դուրս գալ միայն ուսուցչի թույլտվությամբ:





8. Դասի ժամանակ ուղիղ նստել, արմունկների վրա չհենվել ու չմեկնվել, ուշադիր կերպով լսել ուսուցչի բացատրությունները և աշակերտների պատասխանները, չխոսել և կողմնակի գործերով չզբաղվել:

9. Ուսուցիչներին, դպրոցի դիրեկտորին և պաշտոնատար անձանց, երբ նրանք մտնում են դասարան և դուրս են գնում դասարանից, ողջունել ոտքի կանգնելով:

10. Ուսուցչին պատասխանելիս ոտքի կանգնել, մարմինն ուղիղ պահել, տեղը նստել միայն ուսուցչի թույլտվությամբ, պատասխանել ցանկանալիս կամ հարց տալիս ձեռք բարձրացնել:

11. Օրագրում կամ հատուկ տետրում ճշտորեն գրանցել ուսուցչի կողմից հաջորդ դասի համար հանձնարարածը և այդ գրանցումը ցույց տալ ծնողներին. տնային բոլոր հանձնարարությունները կատարել անձամբ:

12. Հարգանքով վերաբերվել դպրոցի դիրեկտորին և ուսուցիչներին, փողոցում նրանց հանդիպելիս քաղաքավարությամբ գլուխ տալ. բարևելիս տղաները պետք է գլխարկները հանեն:

13. Քաղաքավարի լինել մեծերի հետ: Դպրոցում, փողոցում և հասարակական վայրերում իրեն պահել պարկեշտ և վայելուչ:





14. Չհայհոյել, կոպիտ արտահայտություններ չանել, չծխել:

15. Պահպանել դպրոցական շենքը, ծառերը, գույքը, խնամքով վերաբերվել ինչպես իր, այնպես էլ ընկերների իրերին:

16. Ուշադիր և սիրալիր լինել դեպի ծերերը, թույլերը, հիվանդները. ճանապարհ տալ, տեղը զիջել և ամեն տեսակի օգնություն ցույց տալ նրանց:

17. Լսել ծնողներին, օգնել նրանց, հոգատար լինել փոքր եղբայրների և քույրերի նկատմամբ:

18. Մաքրություն պահպանել սենյակներում, մաքուր պահել հագուստը, անկողինը, ոտնամանը:

19. Իր մոտ պահել աշակերտական տոմսը, պահպանել խնամքով, ուրիշներին չհանձնել և դպրոցի դիրեկտորի կամ ուսուցիչների պահանջի դեպքում, ներկայացնել:

20. Բարձր պահել իր դպրոցի և դասարանի պատիվը՝ որպես իր սեփական պատիվը:



